ԳՄԴ 63.3(2Հ)4
Ա315

ԱԼԻՇԱՆ ՂԵՎՈՆԴ
Ա315 Արցախ/(թարգմ. գրաբարից Գ. Բ. Թոսունյանի)
ԵՊՀ—Եր., Երևանի համալս. հրատ., 1993— 124 էջ:

Աշխատությունը նվիրված է Մեծ Հայքի տասնհինգ նահանգնե-րից («աշխարհներից») մեկի՝ Արցախի պատմա-աշխարհագրական նկարագրությանը. մանրամասնորեն քննված են Արցախի տասներկու գավառները, դրանց բնակավայրերը, լեռները, դաշտերը, պատմական հուշարձանները և այլն: Նահանգի աշխարհագրության նկարագրությունը սերտորեն միահյուսված է հայ ժողովրդի պատմության հետ:

Նախատեսվում է ընթերցող լայն շրջանների համար:

Ա $\frac{0502000000}{704(02)-92}$ —93

ԳՄԴ 63.3(2Հ)4

ISBN 5—8084—0221—2

Ղևոնդ Ալիշանը (իսկական անուն-ազգանունը՝ Քերովբե Ալիշանյան, գրական ծածկանունը՝ Նահապետ, 1820—1901 թթ.) ականավոր հայ բանաստեղծ է, արձակագիր, բանասեր, պատմաբան, աշխարհագրագետ, թարգմանիչ, հրատարակիչ, Վենետիկի Մխիթարյան միաբանության անդամ:

Բազմատաղանդ ու բազմաժանր գրողն ու գիտնականը թողել է գեղարվեստական և գիտական հարուստ ու արժեքավոր ժառանգություն: Նրա գիտական աշխատությունների շարքում իր արժեքն ու արդիականությունը չի կորցրել «Հայաստանի տեղագրությունը» («Հայաստանի աշխարհագրությունը») բազմահատոր աշխատությունը: Ալիշանը բնավ չլինելով Հայաստանում՝ իր հարուստ գիտելիքների և վառ երևակայության շնորհիվ այնպիսի ճշգրտությամբ է նկարագրել Մեծ Հայքի գավառները, որ հիացմունք է պատճառում անգամ մասնագետներին:

Ալիշանի աշխարհագրությունից հրատարակվել է միայն չորս հատոր՝ «Սիսական», «Սիսվան», «Շիրակ» և «Այրարատ», որոնք չխամրող կոթողներ են հայագիտության գանձարանում:

«Բազմավեպ» հանդեսը 1988—89 թթ. իր համարներում առաջին անգամ բնագրով հրատարակեց Ալիշանի «Արցախ» պատմաաշխարհագրական ուսումնասիրությունը, որը գրված է ընտիր գրաբարով: «Արցախն» սկսվում է 89-րդ պարագրաֆով, իսկ 1—88-րդ պարագրաֆները հատկացված են Ուտիքի ուսումնասիրությանը:

«Արցախ» ուսումնասիրության մեջ Ալիշանը մանրամասնորեն նկարագրում է Մեծ Հայքի տասնհինգ նահանգներից («աշխարհներից») մեկը՝ Արցախը, նրա տասներեք գավառները՝ Կողթը, Բերդաձորը, Վայկունիքը, Սիսական ոստանը, Մեծկունիքը, Մեծիրանքը, Փառնեսը, Մյուս Հաբանդը, Պարզկանքը, Մուխանքը, Հարճլանքը, Պիանքը, Քուստակը: Գիտնականը մանրակրկտորեն անդրադառնում է Արցախի քաղաքներին, ավաններին, լեռներին, դաշտերին, գետերին, բերդերին, եկեղեցիներին և այլն՝ ամենուրեք Արցախի աշխարհագրության նկարագրությունը սերտորեն միահյուսելով հայ ժողովրդի պատմության հետ:

Առանձին դեպքերում նա իրեն հատուկ գիտական մեծ բարեխղճությամբ կարծիքը հայտնում է վերապահությամբ. այսպես, օրինակ՝ «ինձ թվում է, ես կարծում եմ, ես գտնում եմ, իմ իմացածի համաձայն, ես չգիտեմ» և այլն:

Ալիշանի մյուս աշխարհագրական աշխատությունների նման, «Արցախն» էլ չի կորցրել իր ճանաչողական արժեքն ու սկզբնաղբյուրի դերը: Նրա աշխարհագրական հետազոտությունները փաստական հարուստ նյութ են պարունակում Հայաստանի աշխարհագրության և հայ ժողովրդի պատմական անցյալի գրեթե բոլոր շրջանների ու տարբեր բնակավայրերի վերաբերյալ: Այսպես, օրինակ, «Արցախ» աշխատության միջոցով կարելի է իմանալ, թե մինչև տասնիններորդ դարի վերջերը Արցախի նահանգում ինչ բնակավայրեր, բերդեր, եկեղեցիներ, պատմական հուշարձաններ են պահպանվել, և որոնք են վերացել երկրի երեսից, ինչպես ու ինչու:

Նկատի ունենալով աշխատության հրատարակությունն ու արդիականությունը՝ այն ընթերցողի ուշադրությանն ենք ներկայացնում առանձին գրքույկով:

Գ. Բ. ԹՈՍՈՒՆՅԱՆ

# ԱՐՑԱԽ

89*. Արցախի ամուր և ապահով երկիրը, որ ավելի փոքր է, քան Մեծ Հայքի շատ աշխարհներ (նահանգներ), ունի մոտ 90—100 մղոն երկարություն և դրա կեսի չափ լայնություն: Այն արևմտյան կողմից սահմանակից է Սյունյաց աշխարհին, հյուսիս-արևելքից՝ Ուտիքին, հարավից՝ Երասխ գետին. հյուսիսային և արևելյան սահմանագիծը բացահայտ չի երևում, այլ թվում է, թե այն բաժանվում է լեռների ստորոտներով, մասնավորապես Խոչքար լեռներով և Ծամքորի անջրպետով, իսկ արևմուտքից՝ Սյունյաց Հագարու գետով ու լեռներով, որոնք պարսպում են նրա ելքը և փոխում ջրերի ընթացքը, որովհետև Սյունիքում գետերը հյուսիսից և ելքի կողմից իջնում են Գեղամա լեռներով դեպի մեծ Երասխը, իսկ Արցախում արևմուտքից արևելք դեպի Կուր գետն են հոսում, ոռոգելով Ուտիքի դաշտը, որտեղ ամենահզորը ամենահյուսիսայինն է՝ **Թարթառը**** **կամ Թերթերը**, ըստ մեր նախնիների՝ Տրտուն, որը, բխելով Վայոց ձոր և Զանգեզուր լեռների թիկունքից, անցնելով Խաչենի խոր ձորերով, դուրս է գալիս Ուտիքի Առանձնակ դաշտը՝ անցնելով Պարտավ քաղաքի մոտով:

---

* Արցախն սկսվում է 89-րդ պարագրաֆով, որին նախորդում է Ուտիքի աշխարհագրությունը (ծանոթագրությունը թարգմանչի):

** Ընդգծումները այս և հաջորդ դեպքերում հեղինակինն են (ծանոթ. թարգմ.):

Սրանցից բացի, հյուսիսային կողմում կան և մանր այլ գետեր, ինչպես՝ **Կուրանը**, որ Կուրակին է խառնվում, և դանդաղընթաց այլ գետեր: Իսկ Թարթառից հարավ հոսում է հնում **Չղախ** կոչված գետակը, որը **Խաչենագետ** է անվանվում, որից ավելի հզոր է Գարգարացիների գետը՝ **Գարգարը**, որը բխում Շուշիի սահմաններից և խառնվում է Կուր գետին, Երասխի առնարանից մի փոքր ավելի վերև: Երասխին են խառնվում և այլ գետակներ, որոնք իջնում են Շուշիի հարավից, ինչպես՝ **Հոզլուն, Չերքեն, Տիին** կամ **Գուրուն** և **Քենտիլանը**:

90. Բայց Արցախ աշխարհը ավելի շատ նշանավոր է իր լեռներով, քան թե գետերով, որի պատճառով էլ մեր նախնիները նրան տվել են **Ամուր** մակդիրը, որը ավելի հաճախ տըրվել է Աղվանքի պատմիչի կողմից. «Խոր ձորերով, անտառներով հարուստ Արցախ աշխարհը»[1], այլ տեղերում. «...վիմատակ լեռների ապառաժներ... արցախական ամուր գավառների լեռների վիմախառն ձորախիտ ապառաժներ»[2]: Իսկ Եղիշեն նրանից ավելի առաջ ամրության հետ հիշում է և «Արցախի թանձրախիտ անտառները»[3]:

Արցախի լեռները Սիսականի լեռների հետ միասին զուգահեռ են ստորին Կովկասի լեռներին, որոնց մասին գրքերիս ներածականում խոսեցինք: Դրանք միատարր լեռների ամբողջություն չեն, այլ անջատ են և ընկած են մեկը մյուսի դիմաց, որով և հիշյալ լեռնաշղթան առաջացնում է բազմաթիվ խոր ձորեր ու անդունդներ, վիմահատակ ստորոտներ, որոնց

---

[1] **Մովսես Կաղանկատվացի**, «Պատմութիւն Աղուանից աշխարհի», Երևան, 1983, էջ 98 (այսուհետև՝ Կղնկտ.), Տողատակին հիմնականում տալիս ենք «Բազմավեպ» հանդեսի խմբագրության ծանոթագրությունները:

[2] Կղնկտ., էջ 157:

[3] **Եղիշէ**, Վասն Վարդանայ եւ Հայոց պատերազմին, Երեւան, 1957, 2 125:

հարող թանձրախիտ անտառներով պատած գագաթները ան կրկնելի են դարձնում երկրի տեսքն ու գեղեցկությունը, և խառնիխուռն կերպով երևում են սոճիների, մայրիների հոծ շերտեր. քարքարոտ լեռների անհարթ կառույցներ, խառնիխուռն վիհերի անտաշ ձևեր, ինչպես որ նկարագրում է արդի աշխարհագրագետներից մեկը:

Այդ լեռները հատուկ անունով չեն հիշատակվում հներ' կողմից, բացի հյուսիսում գտնվող **Աստղաբլուրից** և հարավու գտնվող **Դիզափայտից**, թերևս սրանց կարելի էր միացնել Ուտիքում նշվածները: Իսկ այժմ հարավային բարձունքների նշվում են **Սարիպը** և **Մռավը**, որոնք Ուտիքի և Արցախի միջ լարաբաժան են, **Ուղտասարը**՝ տեղադրված Թարթառի ակունք ների մոտ, որոնց ելքերից սկսվում են **Չլեբոդ** և **Գյուլիստա** լեռները, դրանցից էլ հարավ՝ **Գըրք-Կյոզը**, որի շարունակու թյունն են կազմում **Գանձասար** և **Ճահրախտ** լեռները, որտե գտնվում են Խաչենագետի աղբյուրները: Հարավային կողմու Սյունիքի միջնասահմանում Շուշիի **Քիրիզ** և **Ջիարեղ** լեռներ են, իսկ արևելքում, դեպի դաշտաբերան՝ բրգաձև **Կուրիան** լեռ Բայց շատերի անունները անծանոթ են մեզ, որովհետև բաց Շուշիի և արքունի ճանապարհի կողմերից, այդ թվում և Գան ձակը, մյուս անուններից շատ քչերն են ավանդված գիտնա կանների կողմից, չեն հիշատակված նաև ծառերի, վայրի կեն դանիների ու թռչունների տեսակները, որոնք, պետք է գուշակել, որ շատ հնից խոր ձորերում և անտառներում են բնակվե և ոչ թե նոր առաջացած տեսակներ են: Խորենացին ասում է որ **Քարախունկ** լեռը պետք է Կողթ գավառում լինի:

91. Երկրամասի անվան ծագումը անհայտ և անհիշատա է մնում. թերևս անհարմար չի լինի կարծել ծառերի ու թփեր **ցախ** անունից ծագած, ըստ երկրի անտառախիտ բնույթի. ա մեր նախորդները գրում են նաև ծ տառով: **Արցախը** գրվում

նաև հոգնակիով՝ **Արցախք** նաև **Արցախունյաց գավառ,** որը գալիս է Կաղանկատվացուց, ըստ այդմ կառուցողից էլ առաջանում է անունը. այդ անունն ավելի հաճախ հանդիպում է ածանցմամբ՝ **Արցախական գաւառք** կամ **կողմանք**[4]: Երբեք և ոչ մի տեղ չենք հանդիպում **Աշխարհ** անվան, այլ այն Բուզանդի[5] երկում մեկ անգամ կոչվել է **երկիր,** իսկ մնացած բոլոր դեպքերում՝ **գավառ,** ինչպես նույն Բուզանդի[6], այնպես էլ ավելի հաճախ Կաղանկատվացու[7] մոտ, թեպետև ուրիշները սա համարում են շատերից մեկը և տարբերակում են նրա գավառները:

Այդ պատճառով ինձ թվում է, որ հին սովորությամբ հետագայում այն համարվել է 15 աշխարհներից (նահանգներից) մեկը՝ Սյունյաց մարզի առաջին անբաժանելի մասը, որը Սիսակի և Առանի բուն ժառանգությունն էր. այն Վաղարշակի օրոք էլ առանձին նահանգ չի դիտվել, և մեր հին պատմիչներից ոչ մեկը չի հիշատակում սրա իշխաններին, այն չի հիշատակվում նաև հին գահնամակներում կամ սրանց նման և ոչ մի աղբյուրում: Երկիրը իր բնությամբ նման է Սյունիքին, նրան էլ կից է, և երկուսում էլ կան համանուն գավառներ, ինչպիսիք են Սիսականը, Վայկունիքը, Հաբանդը: Բայց երբ այն անջատվել է Սյունիքից, միայն իր ամրությամբ է աչքի ընկել հայոց հարստության մեջ և առավել ևս Աղվանքում: Թերևս վայրի ամրության վրա հույս դնելով էր, որ երկրի իշխանները ապստամբվում էին արքունիքի դեմ, ինչպես որ վկայում է Բուզանդը Արշակ Երկրորդի օրոք և քաջ Մուշեղի միջոցով նվաճվելը: Վար-

---

4 Կղնկտ., էջ 99, 203:

5 **Փաւստոս Բուզանդացի, Պատմութիւն Հայոց, Վենետիկ, 1933, էջ 214**

6 **Փ. Բուզանդ,** էջ 166:

7 Կղնկտ., էջ 137:

դանաց օրերում փախստականներից շատերի համար ապավեն եղան նրա լեռները, որտեղից խաբեությամբ իջեցնելով՝ Վասակը նրանց տալիս էր պարսիկների ձեռքը, բայց կային և այնպիսիները, որոնք սուրբ զորավարի նահատակությունից հետո «տիրեցին Արցախի բազում ամրոցների»[8] և դիմադրում էին պարսիկներին:

Դրանից հետո Ուտիքի հետ միասին սա էլ Աղվանից թագավորության մի մարզն է դառնում և միջին դարերում Աղվանից աշխարհի անունով **Առան** է կոչվում: Համանուն աշխարհում բազմաթիվ իրադարձություններ են տեղի ունենում, և նա իր ամրության շնորհիվ զանազան փորձանքներից մասամբ զերծ է մնում, առանձին իշխանների միջոցով իր գործը կարգավորում, որոնց մեջ քաջի անուն հանեցին Խաչենի իշխանները, ինչպես երևում է գավառի աշխարհագրությունից: Արի իշխաններից ոմանք, հաջորդելով միմյանց, Սյունյաց մելիքների հետ միասին հասան մինչև անցյալ դարի վերջը և մեր օրերը:

92. Հայոց նախնիների իշխանության ժամանակ Արցախը տասներկու կամ ավելի գավառների էր բաժանված, պարզ է՝ ոչ շատ ընդարձակ գավառների, որոնց ոչ բոլոր վայրերն են ծանոթ, իսկ նրանց սահմաններն էլ ավելի անծանոթ են, քանի որ Աղվանքի իշխանության ժամանակ առանձին իշխանների կողմից նվաճվելով, նրանք փոխեցին իրենց սահմանները: Այսպես, Խորենացին[9] 12 գավառներ է թվարկում, իսկ ըստ այլ օրինակների 13 կամ 14 են: Դրանք են՝

ա. **Կողթ** կամ ըստ վատիկանյան օրինակի՝ **Կոխտ, Կող-**

---

[8] Եղիշե, էջ 125:

[9] Աշխարհացոյց Մովսիսի Խորենացւոյ, հրտ. Հ. Արսէն Սուքրի, Վենետիկ, 1881, էջ 33 («Աշխարհացոյցը» վերագրված է Մ. Խորենացուն, այդպես էլ թարգմանել ենք):

յքը, որն ընկնում է Գեղամա ծովի եզրի, Ծամքոր և Խոչքար լեռների ակունքների միջև, Այրում գավառում, որը տեղադրված էին Ուտիքում:

բ. **Բերդ ձոր** կամ **Բերդաձոր**, որն ընկնում է Կողթից հարավ, Գանձակ և Կուրակ գետերի ձորագլուխներում, որը նույնպես Ուտիքում է տեղադրվում:

գ. **Վայկունիք**. ընկած է վերոհիշյալների հարավարևմտյան կողմում, Թարթառի ակունքների մոտ:

դ. **Սիսակյան ոստան**, նույն **Սիսան ձորը**. սկսվում է Վայկունիքի եզրից և, ինչպես ինձ թվում է, ընկած է Կուրակի և Թարթառի միջև:

ե. **Մեծկունիք** կամ **Մեծունիք** կամ **Մեծ Կողմանք**. Թարթառի հյուսիսային կամ ձախ կողմում է, Չլաբերդում:

զ. **Մեծիրանք** կամ **Մեծարանք** կամ **Մեծյուրյանք**. Նույնի գետի հարավում, Գյուլիստանում:

է. **Փառնես** կամ **Քուստի Փառնես**, որը կարծվում է վերևի բլուրի արևելյան կողմում: Խորենացու աշխարհագրության տանձին օրինակներում այդ գավառը երկու մասի է բաժանված՝ **Քուստի** և **Փառնես**, որոնք, երկրամասի մեջտեղում իրար հետ գտնվելով, մի անունով էին կոչվում՝ **Միջնարցախ**:

ը. **Մյուս Հաբանդ**, այսինքն՝ տարբեր Սյունիքում գտնվածից. սկսվում է նրա եզրից և տարածվում է Մեծիրանքի հարավում:

թ. **Պարզկանք** կամ **Պազկանք**, նույն **Պանձկանքը**, որը սահմանակից է Հաբանդին և Ամարասին:

ժ. **Մուխանք** կամ **Միանք**, որը կոչվում է նաև **Միանց** տոհմ:

ժա. **Հարժլանք** կամ **Հարճլանք** կամ **Հարջլանք**:

ժբ. **Պիանք**, որը վատիկանյան օրինակը **Ապիանդք** է կոչում, սրա երեք կողմերը անհայտ են, թվում է, որ ընկած

պետք է լինի այժմյան Շուշիի, Սյունիի և Երասխի միջև, ուր որ գրվելու է և[10]

ժզ. **Քոտակ** կամ **Կոտանք**, հնարկե, եթե ստույգ է առանձին օրինակներում ավելացվածը։

Այդ գավառներից շատերն ունեն տոհմական **անք** մասնիկը։ Ինչպես երևում է անուններից, դրանք տրվել են գավառի բնությանը համապատասխան շատ վաղ ժամանակներից ի վեր, որպիսիք են **Խաղբյանք** և **Խաչյանք** անունները, որոնք հիշատակվում են Ներսես Մեծի ժամանակում, Դ դարում, իսկ այնուհետև ԺԲ և ԺԳ դարերում պատմության մեջ փայլում են Խաղբակյան իշխանները և Խաչենցիք։

93. Այդ գավառների անուններն ու տրոհումը 12-ի կամ 13-ի թերևս աղավաղվել են Աղվանից իշխանների և Բագրատունիների օրոք, տակավին մինչև Ժ և ԺԱ դարերը լսվում են պահպանվում էին, այնուհետև Հայոց և Աղվանից թագավորությունների՝ Պարսկաստանի կողմից գրավվելու ժամանակ գավառների և իշխանությունների նոր անուններ են լսվում, որոնցից հնագույններն են **Ռոստատակ** և **Չղախ** գավառակները։ **Ինձե** գետի հովտում, **Ծառաբերդ** աշխարհը կամ գավառը, որ գրավում է Թարթառի ամբողջ հյուսիսը և մինչև այժմ պահում է իր անունն ու գավառի պատիվը Չլաբերդում. այն պատմիչների երկերում հիշվում է Է-ից մինչև ԺԲ դարը։ Երկրորդը **Փառիսոսն** է, որը հայտնի է դառնում Ժ—ԺԲ դարերում. այն ընկած է Ծառաբերդից հյուսիս։ Դրանք չնայած խառնվում են իրար, բայց պատմիչի կողմից որպես մեկ ամբողջություն չեն հիշատակվում։ Երրորդը **Խաչենն** է, որը նախորդներին գերազանցեց ոչ միայն փայլուն ժամանակով, այլև հնությամբ ու պատվով։ Խաչենը, որ ընկած է **Տրտու** և **Գարգառ** գետերի մի-

---

[10] Բնագիրն այստեղ ընդհատվում է— ծան. թարգմանչի։

չև, իր անունն առնում է համանուն գետակից: Խաչենը մեծ փառքի է հասնում ԺԳ դարում, երբ գրեթե Արցախի անունն էլ փոխվում և **Փոքր Սյունիք** է կոչվում: Գլխավոր գավառների հետ միասին ԺԲ դարում հիշատակվում է և **Աղախը**, որը կարծեմ Գանձակ գավառի հարավային կողմում է: Սրանցից ավելի փոքր գավառներ են **Ամարասը** Թ դարում, որը կոչվում է սալանի անունով, գտնվում է Հաբանդում, **Ծար** երկիրը, որն սկսվում է Սյունյաց Սոդից և կազմում է հին Վայկունիքի մի մասը, **Ականան** և **Կարկառը**, որոնք հիշատակվում են ԺԳ դարում և գտնվում են Սյունյաց սահմաններում, Վայկունիքում և Բերդաձորում: Դրանք փոքր իշխանություններ են, դրանց պետք է միացնել նաև **Հանդաբերդը** և **Ուռիաձորը**: Նույն դարում և ԺԴ-ի սկզբում արձանագրություններում նշվում են այլ բնակավայրեր (վիճակք), ինչպես՝ **Գլուխ**, որը իմ կարծիքով Ծարի կողմում է, **Մոխանց, Հասկաբակ, Կալեր, Խորվագետ, Դվալանոց**, որոնց տեղերը չգիտեմ: Դրանք իրար մոտիկ, մանր իշխանություններ են, սահմանակից նախապես հիշյալ Ականային և Ծարին: Իսկ Խաչենից հարավ (այն տրոհված էր երկու մասի՝ **Վերին** կամ **Ներքին** և **Ստորին**) հիշատակվում են **Դիզա** կամ **Դիզակ** երկիրը և Վարանդան. սրա անունը կա ու մնում է ինչպես ամբողջ գավառի, այնպես էլ Արցախի հարավային մասի համար: Այս բոլոր գավառներից և իշխանություններից միայն Խաչենի անունն ու պատիվն է հին ու հայկական, որն իր իշխանությամբ հարատևեց և հասավ մինչև մոտ դարերը՝ փառավորվելով նաև քահանայական պատվով: Այնտեղ՝ Գանձասար, փոխադրելով Աղվանքի կաթողիկոսական աթոռը՝ Արցախի ստորին կողմերը ամբողջությամբ **Գանձասար** կոչվեցին հայոց պատմության հետագա դարերի ընթացքում:

94. Իսկ երբ թուլանում է հայկական իշխանությունը, և ուժեղանում օտարների ձեռներեցությունը, նախ հոչակվում է

հին **Առան** անունը (հայտնի է, որ այն միշտ անտեսված էր) արևելյան թագավորների շրջանում, և մինչև վերջերս պարսից արքունիքում Արցախ աշխարհը այդ անունով է ճանաչվում, որը կազմում էր ամբողջ նահանգի կամ Առան երկրի միջին մասը, Սյունիքից մինչև Կուր, որն այժմ **Ղարաբաղ** է կոչվում՝ անտառների, ագարակների, այգիների և նրանց ստվերների պատճառով: Այժմ այն ռուսական ինքնակալության իշխանության տակ է, կովկասյան բաժնի մեջ և մայրաքաղաքի անունով կոչվում է Շուշի: Այդ արցախական մասը այժմյան Առանն է կամ Ղարաբաղը, որն այժմ տրոհված է երկու գավառի՝ **Չըլաբերդի**՝ հյուսիսում և **Վարանդի**՝ հարավում. դրանք միջնադարյան գավառների անուններն են: Բայց երկրամասի միջին մասը՝ Խաչենը, կոչվում էր և ցարդ կոչվում է Գյուլիստան, որը գրավում է Արցախի հյուսիսարևմտյան մասը, այն է՝ Թարթառի աղբյուրների ավազանը. այժմ այն համարվում է Սյունյաց երկրի Զանգեզուր գավառի մի մասը: Սրանցից դուրս են մնում նահանգի հյուսիսային և արևելյան եզրերը, որոնք մտնում են Գանձակ և Ջիվանշիր գավառների մեջ. դրանք մենք Ուտիքի մեջ տեղադրեցինք:

Այսպիսով, հիշելով այն, ինչ որ հին ժամանակներում իմացանք գավառների և իշխանությունների մասին, մեզ ցավ է պատճառում երկու-երեք գավառների և իշխանությունների նոր անունները չիմանալը, որի պատճառով էլ մեր աշխարհագրության մեջ Արցախը ստիպված տրոհում ենք ավելի փոքր և ավելի մեծ մասերի ու նրանց հետ ավանդում: Եվ ինչքան որ մեզ ծանոթ է և մեր ձեռքի տակ է հին գավառների դասակարգումը, մեր աշխարհագրության մեջ, ըստ մեր կարողության, դնում ենք հին, միջին և նոր գավառներն ու բնակավայրերը:

| Հին գավառներ | Միջին | Նոր | Բնակավայրեր |
|---|---|---|---|
| ա. Կողբ | Տանձիք (*) | Այրում | |
| բ. Բերդաձոր | Բերձոր, Աղախ (*) | Այրում (*) | |
| գ. Վայկունիք | Ծար, Հանդաբերդ | Զանգեզուր | Վայկունքի, Ծար Ականա, Հանդաբերդ |
| դ. Սիսական ոստան | Սիսանաձոր | Չլաբերդ | Սիսական, Ղայնախ (*) |
| ե. Քուստի-Փառնես | Փառիսոս, Ջալե | Գյուլիստան | Փառիսոս, Ջել |
| զ. Մեծկողմանք | Խաչեն (վերին), Ճառաբերդ | Չլաբերդ | Գյուլիստան, Ջարաբերդ, Մեծկողմանք |
| է. Մեծիրանք | Խաչեն (ստորին), Ճառաբերդ | Գյուլիստան, Չլաբերդ | Մեծիրանք, Խաչեն, Կասապատ |
| ը. Մյուս Հաբանդ | Ամարաս, Խաչեն | Չլաբերդ, Շուշի | Ամարաս, Ասկերան |
| թ. Պարզկանք | Խաչեն | Չլաբերդ, Շուշի | Շուշա |
| ժ. Մուխանք | Խաչեն (*) | | |
| ժա. Հարճլանք | | | |
| ժբ. Պիանք | Դիզա Վարանդին (*) | Վարանդին | Դիզակ (Տոզախ) |
| ժգ. Քոստակ (*) | | | Վարանդին |

## ՎԱՅԿՈՒՆԻՔ ԳԱՎԱՌ

95. Արցախի երրորդ գավառը, Կողբից և Բերդաձորից հետո, որոնք հարկ համարեցինք Գանձակ նահանգի մեջ ընդ-

րագրել, Վայկունիքն է, որը պարզ կերպով առանձնացված է մյուս մասերից, որոնցից ավելի արևմուտք լինելով, երկու կողմից սահմանակից է Սյունիքին, արևմուտքից՝ Սոդք գավառին, որից անջատվում է արցախական Թարթառի և Գեղամա ծովի ավազանների բարձր լեռների անջրպետով, հարավից՝ Հաբանդով կամ այժմյան Զանգեզուրով, իսկ սահմանի ելքից՝ Արցախի Չլաբերդ գավառով, հյուսիսից՝ նեղ Քունկուր լեռով, որտեղ վերջանում է Այրում գավառը: Երկիրը հարուստ է բարձրավանդակներով և լեռնաձեղքերով, ջրարբի է, օժտված բնության զանազան գեղեցկություններով, քանի որ ճանապարհորդները այստեղով առանց հետաքրքրության չեն անցել:

Լեռներից ու բլուրներից բխում են շատ աղբյուրներ ու առվակներ, որոնք հավաքվում են երեք գետակների մեջ, որոնք էլ արևելյան սահմանում միանալով իրար, կազմում են Թարթառ մեծ գետը: Միջին գետը հենց Թարթառն է, որը բխում է գավառի հարավարևմտյան ծայրից, Արցախի ամենահեռավոր մասից՝ **Սարյալ-Սրուչալ** լեռից և, իր մեջ առնելով մանր վտակներ, իջնում է դեպի հյուսիս ու թեքվում դեպի արևելք: Դրանցից առաջինը կոչվում է **Իսքի-սու**, երկրորդը ձախ կողմից խառնըվում է սրան, որն իջնում է հյուսիսից՝ Քունկուրից և Մռավի բարձունքից: Դրա անունը չի նշված, ես կարծում եմ, որ այն **Ականա** գետակն է, ինչպես որ ստորև կասեմ: Երրորդը կոչվում է **Տուղխու-չայ**, որը,[1] բխելով Զանգեզուր լեռների թիկունքից, աջով իջնում է հարավից դեպի հյուսիս և խառնվում վերոհիշյալ գետակին: Երեք վտակների միավորումից հետո Թարթառը հոսում է հարավից դեպի արևելք և, անցնելով Սիսական, Քուստի-Փառնես, Մեծ Կողմանք գավառների միջով, թեքվում է դեպի հյուսիս կամ ձախ, հոսում Մեծիրանքի միջով դեպի հարավ կամ աջ և Գյուլիստանի Մոլլա Իսմայիլ ավանի մոտով դուրս է գալիս Ջիվանշիր գավառը, Ուտիքի դաշտը: Սա Կուրի

ձախակողմյան վտակներից գրեթե ամենահզորն է և ամենամեծը՝ Արցախի և Ուտիքի գետերի մեջ: Այն այդ կողմերի պատմության մեջ մեր նախնիների կողմից անվանվել է **Տրտու կամ Տրտուական գետ,** իսկ պարսիկների կողմից՝ Թերթեր: Երկրամասի բնական պայմանների համաձայն՝ մեր նախնիները արևմըտյան կողմը կոչել են **գի** կամ **գիհի** ծառի պուրակներ, արևմըտյան կողմը, Տուղխու գետակի մոտ՝ բաղանիքի տաք ջրեր, որոնց կանդրադառնանք ստորև:

96. Այս գավառի անվան ծագման պատճառը, որը գրվում է նաև **Վայունիք** և **Վայկունիք,** մեզ է հասցրել մեր վիպասայր Խորենացին: Նա նշում է նաև ժամանակը՝ Փրկչի ծննդից 40 տարով առաջ. երբ Տիգրանն ու Արտավազդը կռվում էին պաղեստինցիների դեմ, «Վայկուն անունով մի ավազակ խռովություն է բարձրացնում Հայաստանում և գրավում **Ամուր** լեռը, և այժմ այդ ավազակի անունով լեռը կոչվում է Վայկունիք»[11], որի պատճառով արքան շտապեց վերադառնալ Հայաստան և երկիրն ազատել ավազակի ձեռքից, որը Կովկասի այն կողմերից էր, թե՞ հայոց նախնիներից, հայտնի չէ: Ըստ երևույթին, նա երկար ժամանակ տիրել է այդ երկրամասին, և այն կոչվել է նրա անունով, իսկ առաջներում, ինչպես ցույց է տալիս պատմիչը, այդ լեռները, իրենց բնության համաձայն, կոչվել են Ամուր: Այդ բառը ուրիշներն էլ են համարում հատուկ անուն, այն նոր անունով կոչելով, ինչպես, օրինակ, Անեցին ասում է. «Վայկուն ավազակի անունով լեռը կոչվում է Վայկունիք»[12]: Այդ պատճառով թվում է, որ Սյունյաց մի այլ անվանի գավառ էլ կար՝ **Վայոց ձոր** կոչեցյալ և ոչ թե այդպես կոչվեց

---

[11] **Մովսես Խորենացի,** Պատմութիւն Հայոց, Տփղիս, 1913, էջ 129:

[12] **Սամուել Անեցի,** Հաւաքմունք ի գրոց պատմագրաց, Վաղարշապատ, 1893, էջ 50:

այնտեղ Ստեփանոս Սյունեցի եպիսկոպոսին սպանելու պատճառով, ինչպես որ Ռահանգի պատմիչն է ասում[13], որովհետև այդ անունը կա նաև մեր հնագույն նախնիների մոտ: Եվ այդ գավառի առանձին բաժանման պատճառով Թ դարի Աղվանից պատմիչը[14] այն կոչում է **Վերին Վայկունիք**, որը 830 թ. նվաճեցին բաղանիկեցիք կամ բաղանակացիք, որոնք տասնհինգ տարի ասպատակեցին Բերձորն ու շրջակա գավառները, և նրանց դուրս վռնդեց քաջ Ապումուսեն: Սա հիշատակվում է Բերձոր և Սիսական գավառների միջև, հյուսիսից դեպի հարավ: Այդ բաղանիկեցիք, որոնք տասնմեկ տարի անց նորից են ասպատակում Սիսականն ու Ամարասը, անտարակույս Արցախի և Գեղամա կողմերի բնակիչներն են, և ըստ եղած կարծիքների, ինձ թվում է, որ ամուր գավառի, այսինքն՝ հոչակված **Բաղանիքի** կողմերից են, որոնք հիշատակվում են այն ժամանակներից: Իսկ այնուհետև այն բաժանվում է ոչ շատ և բազմապիսի բնակավայրերի (վիճակների), ըստ առաջադիմության՝ ավելի մեծ և ամուր շեների: Այսպես, արևմտյան կողմը կոչվում է **Ծար**, արևելյան ընդարձակ մասը՝ **Հանդաբերդ**, հյուսիսայինը, ըստ իս, **Ականան** է, և այդ բաժանումը կատարվում է Տրտուի վերոհիշյալ երեք վտակներին համապատասխան՝ անջրպետված լեռների բազուկներով:

## ԱԿԱՆԱ, ԾԱՐ, ՀԱՆԴԱԲԵՐԴ

97. Խաչենի տերերի և իշխանների արձանագրություններում, որոնք պահվում են վանքերում, շատ տեղերում նշվում են ԺԳ—ԺԴ դարերի բնակավայրերի անունները: Եվ **Ականան** պետք է լինի Հանդաբերդի ու Գեղամա ծովի մոտերքը, որով

---

[13] Նույն., էջ 322:

[14] Անդ, էջ 340:

ճանաչում են Սոդքի լեռնային ու հարավային կողմերը, և Սոդքի գյուղերի մեջ հիշվում է **Ականքը** ԺԶ դարի սկզբին: Կիրակոս Պատմիչը[15] ԺԳ դարի կեսին ասում է Սարթախ խանի մասին, որը դարձել էր Ջալալ իշխան, որից խլել էին **Ականաց** և **Կարկառը**: Թվում է՝ սա պետք է լինի գավառի հյուսիսում, և ինչպես որ Ջակամի աշխարհագրության մեջ հիշատակեցինք, պետք է լինի մինչև օրս հայտնի **Կերկեր** գյուղը կամ վտակը, որը գտնվում է գավառի հյուսիսում 20 մղոնից ոչ ավելի: Եվ այս ամենից ենթադրում եմ, որ այստեղ, Թարթառի հյուսիսային վտակների հովիտներում, պետք է գտնվի և **Ականաց**, որ ցայժմ հեղինակներից ոչ մեկը չի հիշատակել, և արձանագրություններում կամ մի այլ տեղում չի հիշվում, նրանում էլ՝ ոչ մի շենք: Իսկ թղթերում նշվում է միայն **Լեվ-գալե** բերդը վտակի եզրին, որը, թվում է՝ այդ փոքր բնակավայրերի գլխավոր շենքն է եղել, իսկ թե այն ժամանակ ինչպես է կոչվել և այժմ ինչպես է կոչվում, չգիտեմ:

Սրա ելքի մոտ, Չլաբերդ գավառի ծայրին է գտնվում **Յան-շախ** գյուղը: Սրանց մոտ էլ, իմ կարծիքով, գտնվում է **Գլուխ** կոչված փոքր բնակավայրը՝ Ականի կամ Ծարի մի մասը, քանի որ ինչ-որ հիշատակարանում Փոքր Սյունիքի տեր Գրիգորը 1312 թ. նշում է իր իշխանության հիշյալ երկրամասը. «**Փոքր Սյունիքի, Հանդաբերդի, Ականի**, Գեղամա ծովակի բարձր լեռները և Սոդքից մինչև Ծաղկագա», նրան է միացնում նաև մանր «մեր գավառները, որոնց անուններն են՝ **Սոթ, Գլուխ, Բերդաձոր, Ծոխանց**» և այլն, և այլն: Քանի որ Բերդաձորը համարեցինք Կուրակի վերնահովիտը, համար է այստեղ՝ Ականի մոտ կարծել և Գլուխը:

---

[15] **Կիրակոս Գանձակեցի**, Պատմություն Հայոց, Երևան, 1961, էջ 358—359:

98. **Մար երկիրը** գրավում է Ոսթիսու գետի հովիտը կամ Տրտուի միջին մասը, սահմանակից է Սոդքին և երկուստեք պարսպված է լեռներով. անկասկած հարուստ է այդ վայրը: Վերոհիշյալ բնակավայրերի հետ սա որպես գավառ չի հիշվում, այլ Սոդքի մի մասն է, իսկ ավանն էլ առանձին է հիշվում: Որ Սոդքը Սյունիքում է գտնվում, աշխարհագիր Վարդանն էլ է վկայում՝ սրանց կոչելով անվանակից. «Սոդքի գավառը Մարի երկիրն է»[16]: Եվ մենք հարմար գտանք այս անունով կոչել ամբողջ երկիրը:

Ընդարձակ **Մար** ավանը, որ գրքերում և արձանագրություններում գյուղ և գյուղաքաղաք է կոչվում, գտնվում է գավառի հարավային կողմում, այն վտակների միջև, որոնք Թարթառի միջին մասում են հոսում, հարուստ և արգավանդ մի վայրում, որը դարձել է անշուք և սակավամարդ մի վայր, և որը պետք է եղած լինի այդ կողմերի հին և գլխավոր շենը: Առաջինը Գրիգոր Մագիստրոսն է տալիս գինի փայտյա եկեղեցու նկարագիրը. «Ասում եմ քեզ, որ մեր սեփական աղվանական աշխարհում կար Մար կոչված ավանը, և ես ինչ որ ասում եմ, կատակ չէ. վաղուց վրան աճել է գեղեցկատես գինին, որից պատրաստված քիչ սյուներ չենք տեսել կոչարանում, հաստ ու ուժեղ, երկար ու գեղեցիկ գերաններ. այն **սուրբ Հակոբի վկայարանն** է: Տաճարի ամբողջ գույքը կատարյալ է՝ տախտակները, խոյակները, սյուների պատվանդանները ու գլուխները, դռները, սեմերը և հատակը ասում են, որ գինի այդ մի ծառից են պատրաստված: Այդ գավառի այն տաճարում տեսել ենք նաև ընդարձակ սրահներ, միջանցքներ, որոնց չենք

---

[16] Աշխարհացոյց Վարդանայ Վարդապետի, հրտ. Հայկ Պէրպէրեան, Փարիզ, 1960, էջ 12:

հանդիպել ոչ մի տեղ, բացի այդ թագավորական քաղաքից»[17]: Աղվանքի մեջ է մտնում և Ծարը՝ այն ժամանակ Արցախը Աղվանքի տիրապետության տակ լինելու պատճառով, որին, ըստ արձանագրության վկայության, տիրում էին Խաչենի իշխանները ԺԳ—ԺԴ դարերում, ինչպես որ ասում է Գրիգորի և Դոփի որդի Հասանի մասին, որը լինելով այդ կողմերի «և բազմաթիվ այլ գավառների իշխանը, ամենից շատ սիրում էր Ծար գյուղը՝ քաջ հայրենիքն ու պարգևները, որոնք արյան գինն են՝ տրված հայոց թագավորների կողմից»: Պետք է ասել, որ նա այն ոչ միայն սիրում էր, այլև գեղեցկացնում էր շինություններով՝ իրեն գործակից և եղբայր ունենալով Հովհաննես արքեպիսկոպոսին, որը Հաղպատի առաջնորդն էր և շատ շենքեր էր կառուցել այնտեղ:

99. Սա ըստ Թադեի վանքի արձանագրությունների «շինեց Գետամեջ սուրբ վանքը», որը նույն Ծարի վանքն է ավանի հարավում՝ գեղեցիկ մեծ եկեղեցով, որը շատ հին է, և նրա տեղի ու շինության մասին վկայում է արձանագրությունը. «Այն ժամանակ, երբ թաթարները տիրել էին շատ երկրների, մինչև օվկիանոս մեծ ծովն ու Ստամբուլը, Պոնտոսից մինչև Եփրատ գետը տիրելով գոռոզաբար, մեծ հարկեր էին պահանջում՝ նեղություն պատճառելով բոլորին, մեծերին ու փոքրերին մատնելով մահվան ու գերության: Տեր Հովհաննես Դոփյանց, խըղճուկ, տկար և նվաստ հոգի, այն ժամանակ, երբ մենք նեղության մեջ էինք, մեր նախահայրերից մեզ հրաման հասավ գնալ մեր առաջին հայրապետների աթոռը՝ հռչակված Հաղպատ վանքը և դարձի բերել մեր հարազատ ավագ եղբայր, հռչակավոր քաջ զորավար Հասանի հայրենի և սեփական տունը, եկեղեցուն և քահանաներին սիրող նրա որդի Գրիգորին, բարեհամ-

———————

[17] **Գրիգոր Մագիստրոս**, Թղթերը, Ալեքսանդրապոլ, 1910, էջ 221:

քով իր տիկին Ասփային, որը Սյունիքի կողմերի իշխան, մեծ կոմս Տարսայիճի դուստրն էր։ Եվ մենք նայելով ձորակներին, ուր այստեղից, այնտեղից հոսում էին ջրեր, տեսանք որ նրանց միջև մի գեղեցիկ բլրակ կա, ես հավանեցի, մոտ անապատ ու սկսեցի կառուցել մի մատուռ։ Եվ այդ նպատակի համար եկավ գավառի իշխան, մեր եղբորորդի Գրիգորը, որն իշխում էր նաև շատ այլ կողմերի և կամեցավ կառուցել սուրբ Աստվածածինը, որպես միջնորդ մեզ և բոլոր քրիստոնյաների համար։ Ես Տեր Հովհաննեսի շինության սկզբը դրեցի Չճ (1261) թվին»։

Իր դիրքի համաձայն էլ ստացել է **Գետամեջ** անունը, որտեղ վանքից առաջ եղել է վաղեմի մի շեն, քանի որ Գեղարքունի (Մարի մուտքից մոտ 20 մղոն հեռու)՝ այդ կողմերի վրա իշխող Վանենվանքի արձանագրության մեջ Ծապոսի Բագրատունին ասում է, որ 903 թ. վանքին է տրվում **Գետամեջը** այլ չորս գյուղերի հետ միասին։ Արձանագրությունները միշտ այս անունով են հիշում վանքը և ոչ թե **Մարից**։ *Օրինակ, Խութի կամ Թաղեի* արձանագրություններում ասվում է Հովհաննեսի եղբայր Գարեգինի թոռ Սարգսի մասին, որին տրվել են շատ վանքեր «գեղեցիկ զանգակներ... (և) Գետամիջում՝ Մար գյուղաքաղաքում, Եկեղեցու շուրջը կան տոհմի իշխանների խաչազարդ գերեզմաններ, ինչպես որ ասվում է Խութի արձանագրությունում. «Գետամեջը մեր գերեզմանատունն է, մեր պապերից մեզ մնացած», և 1430 թ. Սայտի թոռը՝ վերոհիշյալ Սարգսի որդին տաճարի դռանը մի մեծ խաչավեմի վրա արձանագրում է. «Աստծու օգնությամբ ես՝ մեր ազգի մեծ իշխան, քաջ և հաղթող զորավար պարոն Ծանշի որդի Սայտիս, Փոքր Սյունիքի Ակաքի, Հաթերքի, Հանդաբերդի և Գեղամա ծովակից մինչև Ծաղվանք տեղերի տերս, ՊՀԹ (1430) թ. կանգնեցրի մեր հայր Ծանշի խաչը. ովքեր որ երկրպագում են, թող աղոթքների մեջ հիշեն»։

Այլ արձանագրություններ չեն նշում, և ոչ մի առաջնորդ

չի հիշվում: Եվ թվում է, որ երկար ժամանակ շեն չի մնաց որովհետև ԺԵ դարի կեսին Խութի վանքի արձանագրությու ներում իշխանները (պայազատները) վկայում են, որ այդ ժա մանակ և՛ դրանում, և՛ Խաթրի «վանքերում մարդ չկար, որ առաջ կար և շեն էր պահում»: Եվ տոհմը, որ այստեղ մինչ ութ սերունդ ցույց տրվեց, դրանից այն կողմ չի հիշվում այս տեղ, այլ հիշենք Խաչենում, նաև այլ իշխանների, որոնք Խա չենի շառավիղի ճյուղերից են, որոնք տիրել են Արցախի ար մըտյան և հարավային կողմերին: Գյուղաքաղաքի անունը հը չակվեց, որը բնիկներից մեկը ԺԶ դարում կոչում է **Փոքր Սյ նիք**, ինչպես և Խաչենը:

100. Հետագա դարերում Տար երկրից և ավանից դուրս կան անվանի շատ մարդիկ, ինչպես՝ Հովհաննես Վարդապետ ԺԶ դարում, որն ապրեց Թադեի վանքում, մեռավ 1583-ին թաղվեց Սյունիքի Վասակաշենում: Նրան անվանակից և ժա մանակակից Հովհաննես Վարդապետ Տարեցի պատմիչը, որ իր ժամանակի անցքերը պատմում է մինչև ԺԶ դարի վերջի տարին, նրա պատմության մի մասը տպագրվել է Առաքե պատմիչի Պատմության հետ, իսկ մնացած մասը մեզ անծա նոթ է: Մատթեոս Սարկավագը՝ հայկական տպագրության հա տատման համար քրտնաջան վաստակավորներից մեկը, Ժ դարի կեսին, 1655 թ. գալով Եվրոպա և դեգերելով Վենետիկու ու Հռոմում, ձեռնարկում ու Ամստերդամում կառուցում տպարան, որը բարգավաճման հասցրին Ոսկանյանները, որո հետև անժամանակ մեռնում է Մատթեոսը, 1660-ին:

1250 թ. Տարում սկսում է գործել Դավիթ անունով խաբեբա, մի այլանդակ մարդ, որը «չքավորներից և աղքա ներից էր, պահում էր նրանց ջրաղացը ...և դրանով կերակրու իր կնոջն ու որդիներին...: (Սա խաբվելով դևից)՝ սկսում քարոզել, թե Քրիստոսը երևաց իրեն և ասաց, որ ինքը պետ

է փոխի աշխարհը և բժշկություն անի: Նրան միացան ուրիշներ ը և սկսեցին տարածել նրա համբավը՝ նրան կոչելով Դավիթ միայնակյաց ու սքանչելագործ: Եվ բռնությամբ խլելով նրա տան ձիթահանքի գերանը՝ բարձր խաչ պատրաստեցին, տնկեցին եկեղեցու դռանը, մորթեցին զվարակ (արջառ) և նրա մսից, ոսկորներից, խաչի տաշեղներից, ջրաղացի կորեկի հատից, որպես օրհնության նշխարք, տալիս էին բոլոր ուխտավորներին, որոնք գալիս էին զանազան կողմերից: Նույն քանսարկուն, որ հորդորեց նրան, դրդեց ամբողջ գավառին՝ տղամարդկանց, կանանց, երեխաներին, երեցներին, ազատ մարդկանց, հիվանդներին, ցավագարներին այն համբավի համար գնալ նրա մոտ, առաջինը իրեն կեղծավորելով, ոչ մեկին դեռաքրիստոսին չէր նմանեցնում: Նա այսպես էր քարոզում. Ո՞վ եմ ես, մեղավոր մի աղքատ, բայց Քրիստոսը ինձ հրամայել է քարոզել՝ երկուշաբթի օրը պաս պահեցեք, հայհոյանք մի տվեք, եկեք, համբուրեցեք ինձ, և թող ներվեն ձեր մեղքերը մինչև ձեր յոթերորդ սերունդը»: Ըստ տարբեր տեսակի հիվանդություններ՝ անում էր նաև այլ անմտություն ու խաբեություն, որոնցով «բոլորի միտքը իր կողմն էր գրավում, և այնքան մարդ էր հավաքվում նրա մոտ ժողովի, որ մինչև անգամ տեղը չէր բավականացնում: Եվ քանի որ ամառվա ժամանակն էր, մարդիկ, դուրս գալով դաշտերն ու սարերը, գիշերը այնտեղ էին մնում և կատարում էին զանազան չարիքներ..., և շատերը գնում էին ընծաներով, ոսկով, արծաթով, զվարակով, ոչխարով..., այլ երեցներ եկան և միացան նրանց՝ հարստության տիրանալու նպատակով: Մարդիկ ծառայում էին նրան, լվանում էին նրա ոտքերը և ջուրը շաղ տալիս իրենց ու ժողովրդի վրա...», որը լսելով Վանական մեծ Վարդապետը, նրա աշակերտ, այդ դեպքերը պատմող Կիրակոսը և ուրիշներ, զգուշության ու կշտամբանքի գիր գրեցին, իսկ Տեր Գրիգորիս եպիս-

կոպոսը Դաղիվանքի առաջնորդը, եկավ «շատ քահանաների հետ այն գյուղը, քանի որ այն նրանց թեմի մեջ էր մտնում, խաչով, ավետարաններով և, գիշերային պաշտամունք կատարելով, խարված մարդուն կանգնեցրին մեջտեղում, որպեսզի թերևս նրա միջից դուրս ելնի պիղծ ոգին: Եվ երբ նրան հարցնում էին, թե ինչ է տեսնում, ասում էր, որ երբ բերանքսիվայր ընկնում է երկրի վրա, երկրից [աստված] իրեն է երևում և խոսում իր հետ: Ապա եպիսկոպոսն ու երեցները վերցնելով խաչը, որը ընկել էր խաբեբան, կամենում էին ջարդել: Ցարժվեց ամբողջ բազմությունը և սրերով ու դագանակներով կամենում էր սպանել նրանց, իսկ նրանք, դուրս գալով ամբոխի միջից, անեծքներով խիստ նզովում էին հանդգնողներին: Նրանցից ոմանք զղջացին, գնացին և աղաչեցին եպիսկոպոսին՝ արձակել իրենց անեծքի կապանքներից: Եվ այն մարդուն տվեցին նրանց ձեռքը: Եվ երբ տանում էին նրան, հանդիպեցին գառնեցիք, որոնք գալիս էին մեծ դոնից, այն մարդը նրանց աղաչեց, որպեսզի նրանք իրեն ազատեն եպիսկոպոսի ձեռքից, քանի որ իրեն գառնեցի էր համարում և նրանց ազգակից: Նա ժողովրդի առաջ ասում էր, թե ինքը Արշակունիներից է, հետևաբար իր որդիներից մեկը պետք է լինի թագավոր, իսկ մյուսը՝ կաթողիկոս, և նրանց վրա պետք է կատարել սուրբ Սահակի տեսիլքը: Այնուհետև եպիսկոպոսը այն մարդուն տվեց նրանց և երդումով պահանջեց, որպեսզի նա այլևս չմոլորեցնի մարդկանց, ահա այսպես հազիվ վերացավ չարը»[18]:

101. Ծարի հարավում նշվում է միայն **Ծիպի** գյուղը, որը պետք է լինի մենաստանի մոտ, և նրա անունով էլ պետք է կոչվի Իսդիսու գետակը, իսկ հյուսիսում, գետի ձախ կողմում՝ **Գյոնեյ-Բեյի** արևմտյան կողմում, **Քեշդաքն** է: Նրա հյուսի-

[18] **Կիրակոս Գանձակեցի**, էջ 321—328:

սային կողմում Քեյվանիրն (՞) է, որից հյուսիս՝ **Սերֆինաար,** սրանից արևելք, գետի աջ կողմում՝ **Չիրքին,** որոնց մասին ոչ մի տեղ չի ավանդված: Ինձ թվում է՝ այդ տարածքում պետք է լինի հին **Հղերկս** գյուղը, ուր Է դարի սկզբին Գեղամա երկրից եկավ ոմն հզնավոր Հովսեփը, ծերունի եպիսկոպոս Միհրի օրհնությամբ եկեղեցի շինեց և այնտեղ տեղավորեց սուրբ Ստեփաննոսի, Գևորգի, զորավար Անդրեի նշխարքները, որոնք Տանձիքի հզնավոր Մխիթարը բերեց Երուսաղեմից ու Տորոսից: Դրանց վրա Հովսեփը ավելացրեց նաև Հովհաննես Մկրտչի նշխարքները, որոնք բերել էր Գեղարքունիքի Պուհ վանքից: Եվ վկայարանը, ըստ Աղվանքի պատմիչի տեղեկությունների[19], շինեցին ոմն Փոքրիկ անունով հյուսնը և նրա որդի Հովհաննեսը:

102. **Հանդաբերդում,** որն ընկած է Տուղխո գետակի ընդարձակ հովտում, հարավարևմտյան կողմերում և աղբյուրների մոտ, նշվում են **Պաշդիպելի** և **Ծեքերեմ** գյուղերը, իսկ հարավարևելյան կողմում, հարավից դեպի հյուսիս գնացող հոսանքների մոտ՝ **Գալապունը, Իրզան** կամ **Իրծան,** աջից՝ **Հիրխիջևանը,** ձախից, այսինքն՝ արևմուտքից՝ **Ասերիխը, Քյապեպաշին, Չայքենդը, Հանիսումլուն:** Սրանց մոտ են գտնվում տաք ջրերի անվանի բաղնիքները, որոնք նշում է **Ապիքերմ** (ջերմաջրեր) անունով պարսիկ ոմն աշխարհագիր. Դրանց տեղը նշում է Կիրակոսը Դավիթ խաքերայի պատմության մեջ, երբ Ծարի մասին ասում է, թե այն պետք է լինի «**Հանդաբերդի** մոտ, որտեղ Ջերմուկն է»[20]: Թ դարի հնագույն պատմիչը ևս նշում է նույնը և նրա մոտ էլ՝ **Հանդուն,** որը **Վայկունիքում** է, մեկ գյուղ էլ կա այս անվամբ, քանի որ Ատրներսեհի՝ Սահլ Սյունի Հայ-

---

[19] Հմմտ., Կղնկտ., էջ 280—282:

[20] **Կիրակոս Գանձակեցի,** էջ 322:

կազնի որդու՝ Աղվանից հարստության ժառանգ Ապրսամիկի հետ փեսայանալու մասին ասում է. «չինում է **Հանդու բերդը** և իր ապարանքը, **Վայկունիք** կոչված գյուղում, որտեղ գըտնըվում են արքունական բաղանիքները»[21]: 900 տարի հետո **Վայկունի** ավազակի դաստակերտը կամ գահը փոխելով Սյունի-Աղվանքի իշխանության նոր աթոռով՝ նա երկար ժամանակ չկարողացավ վայելել խաղաղության մեջ, քանի որ Բուղան այլ իշխանազունների հետ միասին նրան էլ գերի տարավ Սամառա, որտեղից շատ տարիներ անց նա վերադարձավ: Երկրամասի պայազատները մինչև ԺԵ դարի կեսը, ինչպես ցույց տըրվեց Սայտինի արձանագրության մեջ, կոչվում են նաև Հանդաբերդի տերեր: 1271 թ. Գանձասարի արձանագրության մեջ գրում է նաև Հանդաբերդցի ոմն Սասնան՝ նվեր տալով վանքին իր կին Մահանի հիշատակին: Այժմ այդ բերդի տեղը չի նշվում, բայց ես կարծում եմ, որ այն պետք է լինի Չայքենդի մոտ, այսինքն՝ Վայկունիք գյուղը:

## ԲԵՐՁՈՐ, ՁԱՎԵ, ՔՈՒՍՏԻ-ՓԱՌՆԵՍ, ՓԱՌԻՍՈՍ ԳԱՎԱՌՆԵՐԸ, ՁԵՎԱ ԲՆԱԿԱՎԱՅՐԸ (ՎԻԺԱԿ)

103. Կուրանի ձորահովտի արևմտյան կողմը՝ Կուրակի պատապարանը, որը կազմում է Մռավ լեռան արևելյան կողմը կամ Այրում և Չլաբերդ գավառների անջրպետը, իմ կարծիքով, հին **Բերդաձոր** գավառն է, թեև բազմիցս ասացինք, որ Այրումի մեջ է մտնում, բայց չենք կարծում, թե նա ամբողջովին ամփոփվում է նրանում, քանի որ Արցախի հին ոչ մի այլ

---

[21] **Կղնկտ.**, էջ 340:

գավառի մեջ հնարավոր չէ այն տեղադրել, քան Բերդաձորի, որի անունն էլ պետք է բխեցնել տեղի բնությունից, բազմաթիվ ամրոցների ու խոր ձորերի քարափների առկայությունից, բայց աշխարհագրի[22] շատ օրինակներում և պատմիչների մոտ **Բերձոր** է անվանված, որն այլ իմաստ է տալիս՝ արգավանդություն: Սակայն կարծում եմ, որ այն հնչյունական կամ բարբառային աղավաղման արդյունք է:

Ըստ Խորենացու, այն պետք է լինի Վայկունիքի մոտ, նրան կից, որը Աղվանքի աշխարհագրության մեջ ներկայացվում է ավելի երկար ձևով: Այդ նույն բանը հաստատում է նաև Աղվանքի Պատմիչը՝ այն դասելով բաղանիկեցիների կողմից նվաճված գավառների շարքը. «Վերին Վայկունիքը, Բերձորը, Սիսականը և այլն»[23]: Սրանք գավառների նվաճումից առաջ, 830-ին ասպատակելով «սրերով ու նիզակներով կոտորեցին Բերդձոր գավառի ավանները՝ **Ուռեցը, Կառնակաշը, Հակարին, Տափարը»**: Այդ պատճառով Ստեփանոս Աբլասաթը բերեց Բաբան բռնակալին և կոտորեց նրանց, բայց իրեն էլ դավեցին: Սակայն դրանց անունները կամ տեղը ինձ ծանոթ չեն:

104. Երկրամասի ելքի կողմում նշանակված է մի փոքր գավառ, որը հնում կրում էր **Զավե** անունը: Այն Խորենացին չի հիշատակում, այլ տեղադրում է Աղվանքում, միացնելով Հայաստանից, Ուտիքից, Արցախից գրաված քսան կամ քսանչորս գավառներին. «Ծիկաշեն Գարդման, Կողթ, **Զավե, Քուստի-Փառնես** և այլն»[24], որը պատմության մեջ ոչ մի անգամ չի հիշատակվում, այլ մինչև այժմ հայտնի է **Զեյվա** անունով և պետք է լինի նույն կողմում, **Ղարա-չայ** կամ Կուրան գետի մոտ: Այն

---

[22] Հմմտ., **Մ. Խորենացի**, Մատենագրութիւնք, Վենետիկ, 1843, էջ 609:

[23] **Նույն**., էջ 327:

[24] **Մ. Խորենացի**, Աշխարհացոյց:

հանգամանքը, որ այժմ էլ այդ գավառը ընկած է նեղ շերտով, ինչպես հնում, վկայում է նրա՝ **Քուստի-Փառնես** մեծ գավառի մի մասը լինելու մասին։ Այն պետք է գրավի հիշյալ գետերի հովիտը, որը և հաստատվում է պատմիչների կողմից. այն դրըվում է նույն գավառներին կից։ Այսպես, օրինակ, այդ բանը հաստատվում է վերոհիշյալ աշխարհագրի և Աղվանքի պատմիչի կողմից[25]։ Նա Սահակ Սևադայի մասին ասում է, որ Թ դարում նա տիրել է Գարդման և Քուստի-Փառնես գավառներին, քանի որ այն ժամանակ Գանձակը ամուր և անվանի պետություն չէր, և ընդարձակ Գարդման գավառը իր տիրապետության տակ էր առել նաև այժմյան Գանձակի գավառը, որին հարավից սահմանակից է Քուստի-Փառնեսը, արևմուտքից՝ Մեծ Կողմանքը։ Եվ «Միսայել եպիսկոպոսը Մեծ Կողմանքի և Քուստի-Փառնես **նահանգի»**, այսինքն՝ այդ երկու գավառների, որպես մեկ ամբողջության, եպիսկոպոսն է։ Է դարում այդ տեղանունը նշված կա այդ տարածության և մեծ իշխանության մեջ։

105. Այս գավառը առավելապես ծաղկում ու հզորանում է Ժ դարում, էլ ավելի հռչակվելով ԺԳ դարում, բայց տակավին ոչ թե Քուստի-Փառնես, այլ Փառիսոս անունով։ Անկախ անունների նմանությունից կամ տարբերությունից, պատմական նշաններից պետք է ենթադրել, որ այն միևնույն գավառն է։ Քանի որ Վարդան Պատմիչն ասում է, թե Մամ տիկինը եկել է Փառիսոսի իշխան Գրիգորի մոտ և նրանից խլել Ծամքորի գավառը[26], որն իր տեղում հիշեցինք։ Դրանից էլ հայտնի է դառնում, որ այն Փառիսոսի մի մասն էր կամ էլ նրան կից

---

[25] **Նույն**., էջ 341։

[26] **Վարդան Վարդապետ**, Հաւաքումն պատմութեան, Վենետիկ. 1862, էջ 100։

էր: Մխիթար Գոշն ասում է, որ Գանձակի մեծ երկրաշարժի ժամանակ շարժվում են շատ տեղեր «Փառիսոսի և Խաչենի գավառներում»[27], որից պետք է ենթադրել, որ Փառիսոսը ընկած էր Գանձակի և Խաչենի միջև: Ասողիկը Գագիկ Ա-ի մասին ասում է, որ նա տիրել էր «Փառիսոսի, Խաչենի, Վայոց ձորի սահմաններից սկսած»[28], որն սկիզբ է առնում արևմուտքից Վայկունիքից և, ձգվելով Խաչենին զուգահեռ, հասնում է երկրամասի սահմանին: Եվ նույն ինքը այլ տեղերում[29] ասում է երկրամասի թագավորների վերացման մասին՝ Գագիկի (որը տիրել էր այդ վայրերի սահմանամերձ շրջաններին) և Գանձակի տիրակալ Փատլունի մասին, որոնք կռվելով միմյանց դեմ, մեկը մյուսից խլում էր երկրամասը: Դա ևս ապացուցում է, որ այդ երկրամասն ընկած էր այդ երկուսի իշխանությունների միջև: Փառիսոսի այդ թագավորները նույն Աղվանքի թագավորներն են՝ Սյունյաց ազգականները, որոնք Ժ դարի կեսին կրկին փայլեցին արքայական փառքով: Իրենց անվանը նոր փառք ավելացրին Սենեքերիմ և Գրիգոր եղբայրները, որոնք մահացան 1003-ին «և նրանց երկրամասը կռվով իրար միջև բաժանեցին Հայոց Գագիկ արքան և Գանձակի ամիրա Փատլունը», որը, լսա Վարդանի, բռնեց Փիլիպեին՝ իր քարերար Գրիգորի որդուն, հոր մահից հետո սպանեց նրան և այդպիսով տիրեց երկրին[30]: Սակայն նույն ցեղից կրկին բողբոջեց իշխանների և թագավորների տոհմը Աղվանքում և Խաչենում, ինչպես ցույց կտրվի առաջիկայում: Եվ դրանով իսկ շատ պարզ կերպով

---

[27] Ալիշան Ղ. Հ., Հայապատում, Վենետիկ, 1901, էջ 361:

[28] Ստեփանոս Տարոնեցի, Պատմութիւն տիեզերական, Պետերբուրգ, 1885, էջ 256:

[29] Անդ, էջ 283:

[30] Վարդան Վարդապետ, Հաւաքումն, էջ 100:

ապացուցվում է, որ այլ էին Փառիսոսի հարստության թագավորները, և այլ՝ Սյունյաց Բաղա հարստությանը, թեև նրանք խնամիներ էին և սերում էին Առանյան նույն ցեղից: Եվ երբ նրանք նահանջեցին Խաչեն, Փառիսոսը Գանձակի տերերի իշխանության տակ ընկավ և ԺԱ—ԺԲ դարերում այն հիշվում է որպես այդ նահանգի մի մեծ մասը: Այնտեղից դուրս եկան հոյակապ մարդիկ՝ Աղվանքի մի քանի կաթողիկոսներ և տաղանդավոր Հովհաննես Սարկավագ Վարդապետը:

Վրաց պատմիչը ավելի վաղ, այն է՝ մեր Արտաշես Արշակունի արքայի օրոք, հիշատակում է **Փառիսոսի դուռը,** որից դուրս ելան, ասում է, վրացիները և կովկասյան ապստամբները ու Վանանդը, Բասենը, Նախիջևանը ավերելուց հետո, անմիջապես անցնելով Կուր գետը, գնացին Կամբեչ[31]: Բայց ես չգիտեմ, թե ինչ տեղի է համապատասխանում այս դուռը: Այդ հին գավառները կամ Կուրանի հովտում գտնվող մի մասը այժմ գտնվում են Չրբերդ մեծ գավառի հյուսիսային կողմում և համարվում են առանձին բնակավայրեր (վիճակ), օտար լեզվով **Ինկիրմիտեօրթ** (քառանչորս)՝ «նրանում նույնքան գյուղ լինելու պատճառով», դրանց թվում են նաև **Չեվան** կամ **Չեյվան** և մեզ ծանոթ հին ու նոր նշանավոր շատ տեղեր:

**106.** Աշխարհացույցում Մռավի արևելյան ստորոտներում նշվում է նոր **Պոլանըզ** մենաստանը, որը, չգիտեմ, կոչում են նահատակված հավատացյալ Թաթարի անունով, թե՞ մի այլ կապակցությամբ, կամ էլ գուցե աղավաղված է այդ անունը: Նրա մոտ, լեռների ստորոտներում, Կուրակի վտակների մոտ են գտնվում **Պուզլուգը, Մռնաշիտը, Էրգեն** և այլն, որոնք, թվում է, քառանչորսից են, որոնց մի մասը ավերակ է ու անմարդաբնակ: Դրանք գոյություն են ունեցել անցյալ դարի վերջին և դարիս

---

[31] **Չամչեան**, Հայոց պատմութիւն Վրաց, Վենետիկ, 1884, էջ 82:

սկզբին, որոնց տիրում էին հայկական առանձին իշխաններ (մելիքներ), և ցարդ հայտնի է Փրիդոնյանների անվանի տունը։

Սրանց մոտ, ավելի հեռու լեռներում, Կուրակի և Կուրանի անջրպետներում է գտնվում **Բերիս** գյուղը, որ, կարծես, Փարիսոսի բուն տեղում է, որի անունով էլ այդ կողմերում ասվում է այժմ ամայի քաղաքի տեղը։ Հների մոտ այս անունով քաղաք կամ ավան չի հիշատակվում, նպատակահարմար է այն կարծել գավառի անունից և այդտեղից էլ՝ Սարկավագը։ Բայց նրանք Ժ դարից հիշում են Փարիսոսի վանքը, որի կործանման ժամանակ առաջնորդն էր Պետրոս Վարդապետը։ Նա ընտրվեց Աղվանքի կաթողիկոս և տասներկու տարի անց «հրաժարվեց աթոռից, և նրան հաջորդեց Փարիսոսի վանական տեր Մովսեսը»[32]։ Եվ մինչև օրս այն նզնավորների ամայի մենաստանն է։

Բերիսից հյուսիս է գտնվում **Ռեյյաղը**, արևելքում, Կուրանի ձախ ափին՝ **Ղարաչինար** մեծ գյուղը (Սև Սոսի), աջից՝ **Ղարա-յաքան,** Բերիսի հարավ-արևմուտքում, նույն Կուրանի մոտ՝ **Ացնա-քենդ** երկու գյուղերը, որոնց մոտ է գտնվում **Մանասբեկ** ավանը, հյուսիս-արևելքում, Չրքերդի ու Ծնաշիրի սահմանամիջում՝ **Չեյվան** կամ **Չեյվալը։** Այն ընկած է Կուրանի աջակողմյան մի վտակի մոտ, մի արգավանդ վայրում, որը իր անունով էլ կոչվում է, և դրանից էլ ծագում է գավառի **Չավեհին** անունը։

Աշխարհացույցում այսքան բան է նշված Փարիսոսի հռչակավոր գավառի մասին, որի փառքն ու անունը ավելի հին են, քան նախորդ նշվածները։

107. Այս բնակավայրի հյուսիսային կողմում, Կուրակ գետի մոտ պետք է փնտրել **Չարդմանի** դաշտակի տեղը, որտեղ նահատակվեց Ս. Եղիշե առաքյալը Գիսից գալու ճանապար-

---

[32] **Կիրակոս Գանձակեցի,** էջ 199։

ռին. «դիցամոլ կռապաշտների զոհարանի տեղում նահատակ-վեց, և հայտնի էլ չէ, թե ում կողմից կատարվեց (նահատակու-թյան) գործը: Եվ այնտեղ, մահապարտների փոսի մեջ ընկավ նրա պատվական նշխարքը և ծածկվեց այն տեղում, որը երկար ժամանակ **Հոռեսք** է կոչվում»[33]: Հայսմավուրք գիրքն ասում է, որ ոչ թե նշխարքները, այլ հենց ինքը՝ սուրբը իր մի աշակեր-տի հետ միասին «ընկավ մի շատ խոր և թունավորաբնակ փոսի մեջ՝ մարմնով շատ այլ չարագործների հետ»: Նշխարքների մասին ասում են, թե դրանք հայտնի են եղել Վաչագանի ժա-մանակներից, իսկ ըստ Պատմիչի «շատ ժամանակ անց աստ-վածավախ մարդկանց տեսիլք է երևում, և մի խումբ գալիս է փոսի մոտ ու այնտեղ տեսնում իրար վրա կիտված շատ ոս-կորներ: Նրանք առհասարակ տարակուսեցին, բայց դիզեցին և գիշերները աղոթքներով հսկեցին այն: Եվ առավոտյան մեծ երկրաշարժ եղավ, և այնտեղ եղողները ընկան գետնին: Անա-պատում բարձրացավ ուժեղ քամի և անսուրբ մարդկանց ոս-կորները սփռեց ամբողջ դաշտով մեկ, իսկ տեղում մնացին միայն առաքյալի նշխարքները: Ուռեկան գյուղի մեծահարուստ ոմն Ստեփանոս քահանան հափշտակեց նրա միայն գլուխը, անապարելով նստեց իր երիվարն ու հեռացավ: Երբ բազմու-թյունը ընկավ նրա ետնից, մթամած մառախուղը փայլատա-կումներով նրանց միջից անցնելով, սարսափեցրեց նրանց, ո-րոնք վերադարձան հավաքատեղի: Տեսիլքով հայտնված սուրբ Եղիշայի նշխարքները տարան, տեղավորեցին Ուռեկան ավա-նում, որտեղ դրվեց նրա գլուխը սուրբ քահանա Ստեփանոսի ձեռքով: Այնուհետև այնտեղից տեղափոխեցին Ներս-Միհրի սուրբ վանքը (Ուխտ), որն այժմ կոչվում է Ջրվշտիկ, որը նույն ինքը Եղիշա առաքյալն է՝ ի փառս ամենակալ տեր Աստծու:

---

[33] **Աղնկտ.**, էջ 10—11:

Երկար ժամանակ անցնելուց հետո բարեպաշտ Վաչագանը Եղիշայի նահատակության փոսի վրա հուշասյուն կանգնեցրեց։ Եվ արքայի սենեկապանը, առանձնանալով այնտեղ, իր կյանքին վերջ տվեց այդ հուշասյան վրա»[34]։

108. Այդ փոսի տեղը, այն է՝ **Հոմենքը** կամ Աղվանքի խոր Վիրապը այժմ չի հիշվում, բայց **Ոռեկանն** ու **Ջրվշտիկը** հայտնի են։ Առաջինը **Հոռիկ** է կոչվում, որը գտնվում է արևմուտքում, **Ջեյվայից** ոչ շատ հեռու։ Այն **Ոռեկն** է, որը պահել է հին անունը և ոչ թե այն ծագում է **հյուր եկ** ձևից, ինչպես կարծում են տեղացիները, որպես թե այնտեղ գիշերով հյուրընկալվել է Վաչագան արքան։ Ինչպես որ անհայտ են սրբի նահատակության հանգամանքները, նույնպես և անհայտ է նշխարքի առաջին գյուտի ժամանակը։ Թվում է՝ Վաչագանի ժամանակ կամ նրանից հետո այնտեղ կառուցվում է **Գտավանքը**, այսինքն՝ **Գյուտի վանքը**։ Գյուտը եղել է Վաչագանի օրոք, ինչ-որ մեկի կարծիքով՝ 489 թ. և սեպտեմբերի 29-ին՝ ըստ Հայսմավուրքի։ Ասում են՝ **Գյուտ** է կոչվում այն գյուղը, որտեղ Վաչագանի ժամանակ հայտնվեցին նշխարքները. դա հիշում է նաև Գյուտ վանքի վանահայրը Եղիա կաթողիկոսի ժողովում, Աղվանքում. արդյոք սա վերոհիշյալ **Պողանոց վանքը** չէ։

Հոռիկում մինչև օրս կանգուն մնացել են 1279 թ. կառուցված մի եկեղեցի և 1284 թ. կառուցված ժամատունը, ինչպես որ ցույց են տալիս արձանագրողները. մեկը գրում է. «ՉԻԸ (1279) թվին, տեր Ստեփանոսի քահանայության օրոք. այս եկեղեցին կառուցող տեր Հովհաննեսին, իր ծնողներին, եղբայրներին հիշեցե՛ք հանուն Քրիստոսի»։ Մյուսը գրում է. «ՉԼԳ (1284) թվին, աշխարհակալ Ապաղա խանի տերության, տեր Ստեփանոսի հայրապետության և Նորադենի, Սրադենի, Գարապիշինի իշխանության ժամանակ, ես՝ տեր Հովհաննես,

---

[34] Անդ, էջ 11—12։

շինեցի գավիթը՝ ի հիշատակ ինձ, իմ ծնողների և եղբայրների»: Եկեղեցու շուրջը կան տոհմիկ մարդկանց գերեզմաններ, որոնց թվում նաև Բեկլար իշխանինը, նրա մոտ էլ՝ վերջին ժամանակներս նշանավոր մարդու՝ Մելիք Ադամի քարաշեն ապարանքը: Եկեղեցու սահմանում կան նաև բազում այլ շենքեր:

109. Գտավանքից պակաս չէ նաև **Ներս Միհրի** վանքը, որը կոչվում է **Ներսմիհրական միաբանություն (ուխտ),** ուր Վաչագանը տեղափոխեց սրբի նշխարքները, որի հետևանքով էլ նրա անունը ընդհանրապես **Ս. Եղիշե** է կոչվում: Ինձ թվում է՝ Ներս Միհր իշխանը վանքը կառուցողն է, և թերևս երկար ժամանակ վերակացուներ նշանակվեցին նրա ցեղից այդ տեղի համար: Այդ է պատճառը, որ նրանք կոչվում են վանքի վանահայրեր, ինչպես, օրինակ, սրբազան Քշիկը՝ Եղիա կաթողիկոսի օրոք, Ը դարի կեսին, Գտավանքի վանահայրը և ուրիշներ: Այն մասին մեզ քաջ հայտնի են դարձնում Աղվանքի կաթողիկոս Սիմեոնի այն կանոնները, որոնք սահմանեց Եղիան, ըստ որի «շատերից տրտունջ եմ լսում, թե շատ տեղերում եկեղեցիներին վանականությամբ հաներձ զինվոր մարդիկ են տիրում, որոնք իրենց չար գործերի պատճառով արժանի չեն եկեղեցի մտնելու, ուր մնաց եկեղեցական հասույթն ու հացը ուտելու: Այդ մասին էլ Ներս Միհրի վանահայր սրբազան Քշիկը գրել է, թե աղվանից իշխան Վարազ Տրդատը մի փոքրիկ գյուղակ է տվել սուրբ Խաչին՝ սպասավորելու իր հոգու փրկության համար, իսկ այժմ Փուսան-Վեհ անունով հեծյալը, անառակ կյանք վարելով, գրածը մեջտեղ է բերում, թե Աղվանքի իշխանը իրեն է տվել այդ եկեղեցին վանականությամբ, որպեսզի ինքը հոգ տանի...: Եվ թող Փուսան-Վեհը չտիրի այդ եկեղեցուն՝ ըստ սուրբ հոգու հրամանի»[35]: Եղիա կաթողիկոսը ժողովի կանոնների այս պատ-

[35] Անդ., էջ 309:

ձենը տվել էր Քշիկին՝ պահելու, ինչը և նա կատարեց:

Ծառ հին է վանքի Զրվշտիկ անունը, որով և մինչև օրս կոչվում է: Այն գտնվում է նույն Հոռիկի արևմտյան կողմում, դժվարանցանելի ձորամիջում, որի պատճառով էլ անապատ է կոչվում: Այդ վանքում, ասվում է մի հիշատակարանում, գրտնըվել է Տիրամոր վերափոխման պատմությունը, որը Քերթողահայրը և Մանդակունին հրատարակեցին: Պահպանվել են ԺԳ դարում կառուցված շենքերը: Եկեղեցին փոքր է և կառուցված է կանոնավոր ձևով, անմշակ մեծ քարերով Վաչագանի դատակերտի հիմքի վրա հետևյալ արձանագրությամբ. «ՈՂԴ (1245) թվին ես՝ սուրբ միաբանության Սերոբ սարկավագս, նախկին հիմքի վրա շինեցի սուրբ Առաքյալ վանքը. ձեր ա՛ղոթքների մեջ հիշեցե՛ք»: Գավիթը ևս անշուք ձևով է շինված, 1264-ին, ինչպես վկայակոչում է արձանագրությունը. «ՁԺԴ (1264) թվին ես՝ Խաչատուրս, աստծու կամքով շինեցի այս ժամատունը, առաջնորդությամբ տեր Սիմեոնի. աղաչում եմ՝ հիշեցե՛ք հանուն Քրիստոսի»: Սերոբին և Խաչատուրին օգնել են և ուրիշները, ինչպես որ գրում են. «Մենք՝ Առաքել վարդապետս և Զահան իշխանի որդի Թեոդորոսս, Աստծու օգնությամբ կառուցեցինք այս եկեղեցին և ժամատունը՝ ի հիշատակ մեզ և մեր ծնողների»:

Կան և այլ համառոտ արձանագրություններ, ինչպես՝

Ա. «Ես՝ Գրիգորս, Աստծու կամքով շինեցի Ոստապատ եկեղեցին, ավետարան գնեցի և Քերթ հողամասը նվիրեցի սուրբ միաբանությանը: Առաջնորդ տեր Սիմեոնը և միաբանները Համբարձման տոնի ժամանակ երկու ժամ պատարագ արեցին»:

Բ. «Ես՝ Սերովբ քահանաս, Աստծու կամքով երեք գիրք տվեցի սուրբ ուխտին: Առաջնորդ տեր Սիմոնը և միաբանները Բարսեղի տոնի առթիվ պատարագ կատարեցին»:

Գ. «Ես՝ Դավիթս և իմ ամուսինը միաբանեցինք սուրբ ուխտի հետ և խաչ նվիրեցինք։ Առաքյալների տոնի ժամանակ մեզ համար երեք պատարագ կատարեցին»։

Դ. «Մենք՝ Առաքել Վարդապետս, Շրվանի թոռ տեր Մատթեոս եպիսկոպոսս, Ճհանշի որդի Տիրանս, Աստծու կամքով շինեցինք այս եկեղեցին, սալեցինք ժամատունը՝ ի հիշատակ մեզ և մեր ծնողների. ՋԾԸ (1509) թվին»։

Ե. «Ես՝ տեր Մատթեոսս, Աստծու կամքով սալեցի այս եկեղեցին ՉԿԶ (1317) թվին, իսկ զանգակատունը շինվեց ՉՀԲ (1323) թվին. հիշեցե՛ք աղոթքների մեջ»։

Զ. «Ես՝ Հովհաննեսս, Աստծու կամքով միաբանեցի սուրբ Առաքյալին, այս սուրբ նշանը տվեցի ավագ եկեղեցուն, Սիմեոնի առաջնորդության ժամանակ, և միաբանները Ղազարոսի տոնին երկու ժամ պատարագ տվին։ Կատարողները օրհնվեն Աստծու կողմից. ՉԽԱ (1292) թվին»։

Մի այլ արձանագրություն էլ գրված է մի փոքրիկ մատուռի մասին, որտեղ հանգչում է բարեպաշտ Վաչագան արքան, որի շնորհիվ Աղվանից հավատը դարձել է հաստատուն ու փառավորված։ Մատուռի վրա գրված է. «Սա է Վաչագան թագավորի հանգիստը. թող աստված ողորմի հայրապետին, նրա ծնողներին և նրանց, ովքեր շինեցին այս եկեղեցին տեր Սիմեոնի առաջնորդությամբ. դա ՉԼԵ (1286) թվին էր»։ Գավթում կան ուրիշ տապաններ էլ, դրանց թվում նաև 1656 թ. ստարների կողմից սպանված Մելքիսեթ առաջնորդի տապանը։ Մենաստանը շրջապատված է քարուկիր պարսպով։ Կանգուն են մնացել սենյակները ու ընդարձակ սեղանատունը։

Ջրվշտիկին մոտիկ, քարքարոտ տեղերում կան մեծ շենի ավերակներ։ Այդ շենը **մայրաքաղաք** են կոչում։ Նրա մոտ են գտնվում Մելիք Ադամի քարաշեն գեղեցիկ ապարանքը և մի մատուռ՝ կառուցված Փախրադինի իշխանության և Սուքիասի

առաջնորդության ժամանակ, 1260 (ՉԺ) թվին, որից էլ պարզ է դառնում, որ այդ տեղում եղել է մենաստան: Ինձ թվում է, որ Ներս Միհրին մոտիկ պետք է եղած լինի և **Հոսեփի վանքը**, որի վանահայրը Եղիա կաթողիկոսի ժողովի ժամանակ հիշատակված Գրիգորն էր:

## ԳՅՈՒԼԻՍՏԱՆ-ՌՈՍՏԱՍՏԱԿ

110. Կուրանի և Թարթառի միջով հոսում է ձկնաքեր (կարմրախայտ) **Ինճե** գետը, որը, ինչպես ինձ թվում է, բխելով Մռավի արևելյան բլուրներից, անցնում է Ոտիքի Ճնանշիր գավառը: Բայց չի նշվում նրա գետաբերանը, այն է՝ Կո՞ւր գետն է թափվում, թե՞ մի այլ տեղ: Հարկ է մտածել, որ հնում այն պետք է եղած լիներ Քուստի-Փառնեսի կամ Մեծ Կողմանքի մի մասը, որոնք Աղվանքի գավառների մեջ են մտնում: Օրինակի համար, վերոգրյալ Զավեն կամ **Ռոստակը**, որը Աղվանքի պատմիչը համարում է Մեծ Կողմանքի մի մասը[36], աշխարհագրի մոտ նշված է **Ուտոուստակ** կամ **Ոտոոտսակ** սխալագրությամբ: Անտարակույս այն պետք է ընկած լինի Թարթառի և Ինճեի միջև, բայց թե դրա ամբողջ հովիտը Արցախի որ մասն է գրավում, չգիտեմ:

Միջին դարերում, երբ այլազգիները իրենց ձեռքը գցեցին այս տարածքը, այն կոչվում էր Գյուլիստան, որպես և մինչև օրս է կոչվում, գետի ձախ ափին գտնվող բերդավանի հետ միասին, որն ընկած էր **Ագնաքեն** գյուղերից հարավ:

Խթրավանքի մի արձանագրությունում **Գոլաստյան** է կոչվում: Ասվում է նաև ԺԲ դարի սկզբի այդ կողմերի արքայազնիշխան Վասակի մասին, որը, գնալով այնտեղ, ազատում է այն

[36] Կղնկտ., էջ 20ե

ոտարների ձեռքից և այնտեղ բնակեցնում իր որդուն: Այնտեղ բերվում է մի մեծ խաչվեմ, որի վրա էլ արձանագրվում է այս բանը:

Արցախում, Ինճեի հովիտներում, ըստ Ջալալյանի, դեպի ձորամեջ ընկած գետափին, նշվում են ճգնավորների՝ **Թաղիպեկի** անունով ամայի վանքը, իսկ գավառի սահմանում, Գյուլիստանից ավելի հյուսիս-արևելք՝ **Թալիշ** գյուղավանը: Գետի ափին, մի բարձր վայրում գտնվող Գանձասարի արձանագրությունում հիշատակվում է Աբով հայրապետը՝ Թալիշի իշխան Հովսեփի որդին, որը 1657 թ. իր կին Հերիքնազի հետ միասին օգնում է նորոգելու սուրբ աթոռի երկու եկեղեցիները: Սրանց ցեղից են սերում ԺԸ դարի անվանի և քաջ մարդիկ՝ Մելիք Հովսեփը և Մելիք Բեկլարը: Թալիշից հյուսիս նշվում է Թուրուս գյուղը:

## ՉԱՐԱԲԵՐԴ (ՉԼԱԲԵՐԴ), ՄԵԾ ԿՈՂՄԱՆՔ ԳԱՎԱՌՆԵՐԸ

111. Ըստ այժմյան վարչատնտեսական բաժանման՝ գրեթե Արցախի կեսը գրավում է **Չլաբերդ** մեծ գավառը, որին սահմանակից են հյուսիսից Այրումը, սկզբից՝ Ծնաշիրը, հարավից՝ Վարանդին, արևմուտքից՝ Զանգեզուրը: Մինչ այժմ մեր նկարագրածները՝ Փառիսոսը, Ջևան և Գյուլիստանը, ընկած են նրա հյուսիսային կողմում: Նրա միջին մասը՝ Տրտու կամ Թարթառ գետի մեծ հովիտը, **Չարաբերդի** բուն տարածքն է, որը հնում ամուր բերդ էր՝ հիշատակված Է դարի սկզբից: Ինչպես կարելի է գուշակել պատմությունից, ԺԱ և ԺԲ դարերում, Աղվանքի թագավորների թուլացման ժամանակ, Չլաբերդը հասնում է բարգավաճման, ընդարձակման և կոչվում **Ծառաբերդի աշխարհ**: Այն ժամանակ սա եղել է Փառիսոսի և Խաչենի միջսահմանը, որոնք այժմ ամբողջովին մտնում են նրա մեջ:

Ըստ Արցախի վաղնջական տրոհման՝ բուն Չարաբերդը Քուստի-Փառնեսի կամ մանավանդ **Մեծ Կողմանք** գավառի մի մասն է, որի սահմանը Տրտուի հյուսիսային կամ ձախակողմյան ափերն են, թերևս մի նեղ շերտով այն կողմն անցած, հարավայինը՝ Մեծիրանքը, որը հետագայի բուն Խաչենն է, այսինքն՝ Վայկունիքի արևելյան և Թարթառի հարավային կողմը, որի մասին կխոսենք ստորև։

Այս **Մեծկողմանք** գավառը, որը հայտնի է նաև **Մեծկունիք** կամ **Մեծունիք** անուններով, հնում արցախական շատ մարզերից ավելի նշանավոր էր և նույնպես պետք է բնակեցված եղած լիներ քաջ և երևելի մարդկանցով, որից էլ պետք է ստացած լինի Մեծիրանք անունը։ Այն աչքի է ընկել նաև ամրությամբ, պատմիչը[87] այն անվանում է ձորերով և անտառներով շատ հարուստ վայր, թեև նույն պատմիչը գրում է, որ հոները Ե դարի կեսին ասպատակել ու ավերել են այն, որի մասին շուտով կպատմենք։

Եվ սա ըստ իր գրաված դիրքի **Միջնարցախ** գավառ է կոչվում։ Այն ուներ հին և առանձին եպիսկոպոսարան **Տաղձանք** կոչված տեղում։ Հիշատակվում են հետևյալ եպիսկոպոսները՝ Զ դարի կեսին Ղևոնդը, Է դարի կեսին Դավիթը, նրա հաջորդ Իսրայելը, Միսայելը (?), Դավիթը, որը 768 թ. կաթողիկոս նշանակվեց, Հովսեփը, որը 848 թ. կաթողիկոս նշանակվեց, Սամվելը, որը 877 թ. կաթողիկոս նշանակվեց, Սահակը, որը կաթողիկոս էր Ժ դարի առաջին կեսին։

Քուստիփառնեսի եպիսկոպոս Միսայելի (եթե տարբեր լինի Իսրայելից) Ս. Խաչին ձոնած ներբողը հասել է մեզ։

Թ դարի կեսին Մեծ Կողմանքի կես մասին իշխում էր քաջ Ապումուսեն, որը հերոսացավ Քշիթ լեռան վրա։ Դրանից հետո,

---

[87] Կղնկտ., էջ 98։

Փախոսի և Ծառաքերդի քարգավաճման ժամանակ, գրքերում այդ անունը այլևս չի երևում, բայց հետագա դարերում նորից լսվում է: Այն մինչև օրս առանձին իշխան է կառավարում: 1722 թ. Խաչենից այնտեղ եկան լեկերը և ասպատակեցին, իսկ երկրի տեր Թարկանղուլի սուլտանի թոռ Քալբ-Ալի-Բեկը փախավ Ծար երկիր և ապա, իր որդուն որպես պատանդ նրանց տալով, վերջը տվեց ասպատակությանը և վերադարձավ իր տեղը:

112. Մռավի արևելյան կողմում ընկած են գավառի երկայնանիստ լեռները, որոնք գրեթե ձգվում են Թարթառին զուգահեռ, և դրանցից սկսվելով մի փոքր, նույն ընթացքով շարժվելով դեպի արևելք, միանում է գետին: Խառնարանի մոտ է գտնվում հին ու անվանի **Չարաքերդը**. այն նախ այդպես է կոչում Կաղանկատվացին, իսկ հետո Գոշը[38] կոչում է **Ծառաքերդ**, նրանից հետո մինչև այժմ գավառը կոչվում էր **Չլաբերդ**, **Չլբերդ** կամ **Չրբերդ**: Իսկ բերդն այժմ կոչվում է **Ջրբերդ**, նաև **Ջերմուկ**, աշխարհացույցի քարտեզում՝ **Անումրուգ գալե**՝ կառուցված քարե մի բլուրի վրա, որն անմատչելի է երեք կողմերից, իսկ չորրորդը ամրացված է գետով: Այս ամրոցն է հասնում Է դարի սկզբի Աղվանից Վիրո կաթողիկոսը, որը ազատվել էր պարսից կապանքներից, Խոսրովի սպանությունից հետո և, հանդիպելով հոների կամ խազիրների արքայորդի Ծաթի ասպատակներին, կաթողիկոսն «իր մոտ է հավաքում բոլոր մեծամեծներին, այդ մեծ երկրի թագավորությունների որդիներին, գավառատերերին, գյուղապետերին, քահանաներին, դպիրներին, որոնք այն ժամանակ գտնվում էին այնտեղ՝

---

[38] Հմմտ. Հայապատում, էջ 387:

Չարաբերդ ամրոցում»[39], և խորհրդակցեց ու գնաց Պարտավ, Ծայթի մոտ:

ԺԲ դարի կեսին ապրում էր Տողան անունով մեկը՝ Դարի որդին, Ծառաբերդ երկրի և Նույն դղյակի իշխանը, որը գոռոզանալով կամեցավ տիրել Առանին և կովեց ոմն Թուրքմանի հետ Հերքան բերդում ու սպանվեց: Օտար բռնակալներից հետո այդ բերդին տիրեցին Խաչենի իշխանները, բայց նրանցից այն նորից խլում են թուրքերն ու վրացիները, մինչև որ թաթար Սարթախ խանը այն վերադարձրեց մեծ իշխան Հասան Ջալալին, որի հայրենիքն է համարում ժամանակակից Կիրակոս պատմիչը ԺԳ դարի կեսին[40]: Դրանից հետո գրքերում այլևս չի հիշատակվում Չարաբերդը, որը հետագա դարերում մարտերի ժամանակ շատ անգամ ամուր ապավեն է եղել:

113. Չարաբերդից մի փոքր արևմուտք, լեռան ստորոտի մի ձորում է գտնվում **Երից-Մանկանց** կամ **Դանիելի վանքը**, որը աշխարհացույց քարտեզում գրված է **Քիբերդի Վելի վանք** անունով, որի մասին հիշատակություններ կան միայն արձանագրություններում: Այն կառուցել են Աղվանից Սիմեոն կաթողիկոսն ու նրա եղբայրը ԺԷ դարի երկրորդ կեսին: Այն կանգուն մենաստան է՝ քարով շարված սենյակներով, պարզունակ քառակուսի եկեղեցով... երկար և լայն չորս սյուների վրա: Եկեղեցու դռան պատերի վրա կան արձանագրություններ.

«ՌՃ թվին, Պարսից մեծ արքա Սուլեյման Ծահի ժամանակ, ես՝ Սիմեոնս, Աստծու շնորհիվ Աղվանից կաթողիկոսս, շինեցի այս եկեղեցին իմ հարազատ եղբայր Իգնատիոս Վարդապետի հետ միասին. մենք մեծաշենցի Սարգիս քահանայի որ-

---

[39] Կղնկտ., էջ 157:

[40] Հմմտ. Կիր. Գանձակեցի, էջ 358—359:

դիՆերՆ ենք: Ձեր աղոթքների մեջ հիշեցե՛ք, Նոր Սիոնի որդի-Ներ, տերուՆակաՆ դոՆով մտՆելիս և ելՆելիս. ամեՆ»:

Իսկ խորանի ճակատին չափածոյով գրված է.
**«Կառուցվեց Նոր ուխտի պատարագի**
**Եվ փառքի տաճարն ու Աստծու տան**
**Նվիրական այս հարկը,**
**Որը Տեր Հիսուսը մեզ ավանդեց.**
**Այն կառուցվեց երկու հարազատի**
**Սիմեոն կաթողիկոսի և Իգնատիոս Վարդապետի**
**Եվ շատ այլ աշխատողների կողմից:**
**Կյանքի դիվանի մեջ գրված է,**
**Որ սույն եկեղեցու կառուցումն**
**Ավարտվեց Հայոց ՌՃԺԳ թվին՝**
**Ի փառս անճառ Տեր Հիսուսի:**
**Ովքեր աղոթում են և երկրպագում,**
**Ուղղամտորեն թող այս նկատեն:**
**Եվ մեր անձանց, է՛լ առավել մեր մարմնավոր**
**Ծնողների՝ Սարգիս քահանայի, մեր մոր**
**Եվ այլ աշխատողների համար**
**Թողություն խնդրեն»:**

Ըստ Ջալալյան օրինակի՝ այս ՌՃԺԳ (1664) թվականը բացահայտ սխալ է և վերևում ասվածին հակառակ ու անհնար, որովհետև այն ժամանակ կաթողիկոս չի եղել, իսկ եթե ՌՃԾԳ (1704) թվական կարդանք, այն ևս անհնար է, որովհետև այն ժամանակ վախճանված էր Սիմեոնը:

Պատի աջ կողմում գրված է. «Այս եկեղեցին կառուցող վարպետ Ուստա Սարգսին հիշեցեք հանուն Քրիստոսի»: Իսկ նրա կողքի արձանագրությունում վանքի վերաբերյալ հիշատակվում է. «Մեր աշխատանքը ավարտի հասցրինք՝ աստվածասեր-

ների ու ողորմածների միջոցով ու օգնությամբ. սուրբ Դանիել մարգարեի և երեք սուրբ Մանուկների պատվական նշխարքները, որոնք դրված են այստեղ, մեծամեծ հրաշագործություններ են կատարում: Այստեղ այն կառուցվեց մեր փրկության, մեր բազում մեղքերի թողության, մեր հոգևոր ու մարմնավոր ծնողների, ինչպես նաև բոլոր աշխատողների համար. մեզ և վանքի միաբաններին հիշեցե՛ք ձեր սուրբ աղոթքների մեջ»:

Կասկածելի է նշխարքների մասին եղած այս տեղերի ավանդությունը, քանի որ, մեր կարծիքով, սրբերի մարմինները երկար ժամանակ մնացել են Բաբելոնում, հետո տարվել Կոստանդնուպոլիս, այնտեղից փոխադրվել Վենետիկ և ապա բաշխվել Եվրոպայի տարբեր կողմերում:

114. Այդ Մեծաշեն գյուղը, եթե նույնը չէ, ապա ինձ թվում է, որ այն Խոտորաշեն գյուղի մոտ պետք է լինի, որը մոտ է վանքին և այժմ ամայի է. քանի որ եկեղեցին կառուցող Սիմեոն կաթողիկոսը կոչվում է Խոտորաշեցի և Զարաբերդցի: Այս գյուղից էր նաև մյուս Սիմեոն կաթողիկոսը՝ առաջինի ազգակիցը, որը մեռավ 1810 թ.:

Այս երկրամասում ուրիշ գյուղեր չեն նշվում, բացի Զարաբերդի արևմտյան կողմում, Թարթառի ափին նշվածներից, որոնք են՝ **Ղարապոլագը**, **Թանկուր-լուլուպեյը**, նրանցից ավելի վերև գտնվող **Հասանրիսը** կամ **Հասանարիսը**, որը թերևս ծագում է Ջալալյանց Հասան իշխանների անուններից: Է՛լ ավելի վերև, հյուսիսարևմտյան կողմում Թարթառի մի վտակին է միանում **Ուզանըզը**: Բայց մեր նախնիները այս Մեծ Կողմանք գավառում նշում են նաև այլ նշանավոր վայրեր ու դեպքեր Ե և Է դարերում: Այդ ավելի հռչակավոր վայրերից է **Աստղաբլուր** լեռը, որը մինչև այժմ ճանաչվում է այդ անունով. դա գեղեցիկ անուն ու բնություն ունեցող մի առանձին, ծաղկազարդ բլուր է:

115. Ս. Մեսրոպի Գիսից մեկնելուց և նրա մահվանից հետո, որի մասին իր տեղում խոսեցինք, նրա մնացած աշակերտները գնալով Երուսաղեմ, այնտեղից վերցնելով սրբերի նշխարքները և բազում սուրբ սպասքները, նաև իրենց առաջնորդ Աթանաս անունով վարդապետին ու երկու այլ քահանաների, վերադառնում են և, հասնելով Մեծկունիքի ձորերը «ճանապարհի կիրճում երկու խմբի են բաժանվում», ինչպես ասում է պատմիչը[41]: Դա ևս ցույց է տալիս, որ այնտեղ, Մոավ և Զարաբերդ լեռների միջև, թերևս նույն Փառիսոսի դարպասի մոտ լեռնանցք է եղել: Մի գունդը նստում է «այն տեղում, որին Աստղաբլուր են կոչում, որը գտնվում է հյուսիսային կողմում, իսկ երկրորդ գունդը բանակ է դնում Տրտու գետի այն կողմում, Չղախ կոչված անտառապատ պուրակի հովտում, որովհետև ուխտով միմյանց խոստացել էին այդ տեղում կատարել ամենասուրբ Զատկի տոնը»:

Եվ եղավ, որ այն ժամանակ հոները մեծ հրոսակախմբերով շարժվեցին դեպի արևմուտք, որոնցից մի հզոր գունդ, Կուր գետից անցնելով Ուտիքը, «ասպատակեց Մեծկունիքը: Ավազակների համբավի ձայնը լսելով՝ երուսաղեմյան չղախարբնակ գունդը, բոլոր նշխարքների մասունքները ամփոփելով արծաթյա երկու կողովների մեջ, թաքցնում է հողի մեջ: Եվ իսկույն հասնելով օրհասական այն գուժարկու աղմուկը, անխուսափելի տարակուսանքը, տարածվելով հողմացայտ անձրևի նման և անցնելով ծովի ալիքի նման, հասնում է Աստղաբլուր: Նրանք, չըկլանկածելով այդ երևույթների վրա, հանկարծակի հանդիպում են անխնա սրի խողխողման: Եվ գրավելով ոսկու և արծաթի սպասքները՝ սուրբ նշխարքները խառնիխուռն կերպով ցրում էին բլուրի վրա և այնտեղ նահատակում քահանաների ավա-

[41] Կաղանկտ., էջ 98—99:

գին՝ երանելի Աթանասին, իսկ մնացածներին գերում և այդ նույն տեղում էլ փակում են», որոնց հետ էլ «Ոստիքի գավառից Թագուհի անունով մի կնոջ, որը այդ երկրի բնիկ ազատներից էր, Բագին գյուղից», որին հյուսիսի զորավարը կամենում էր առնել կնության: Գավառը գերելուց հետո, [իշխանը] վերցնում է նրան, նահատակվածների ընկերներին և բերում է նույն Աստղաբլուր վայրը ու իր սպասավորների հետ միասին աղաչանքով, սպառնալիքներով հորդորում կնոջը՝ հնազանդվել: Երբ չեն կարողանում համոզել համառ Թագուհուն, նրա ձեռքերը կապում են ետևը ու նրան մազերից քարշ տալիս անապատում անտառի սուր փշերի վրայով: Խփում էին նրա դեմքին և մարմինը ամբողջովին սլատառոտում, դրանից հետո սուսերով կտրում են երանելու գլուխը: Այսպիսի կռվի է հանդիպում սուրբ տիկինը և Քրիստոսի աստվածային պսակով պսակվում մեծն այն Թագուհին: Դրանից հետո նույն գիշերը, քանի դեռ ուրախանալով դեգերում էին այլազգի իշխանն ու նրա զորականները, կատարելով ուրախ խրախճանք, հանկարծակի Տիրոջ կողմից նրանց երևաց մի զարմանալի նշան: Բոլորը իրենց աչքերով բացահայտ տեսնում էին մի լույս, որը ծագել էր այն տեղում, որտեղ նահատակվեց սուրբ Թագուհին, իսկ անտառում ցրված նրա հագուստի ծվենները աստղերի նման փայլփլում էին և երկար ժամանակ աստղանման լույս սփռում սուրբ նահատակների վրա, որը, տեսնելով մարդկանց բազմությունը, այդ նույն տեղն անվանեց Աստղաբլուր, որպես և կոչվում է մինչև օրս: Դրանից խիստ զարմանում ու մեծ ահի տակ է ընկնում իշխանը: Նա հրամայում է իր մոտ կանչել քահանաներին: Նրանցից սովորելով փրկության ճանապարհը՝ նա հավատում է կենդանի Աստծուն և հրամայում է հավաքել սրբերի ցրված նշխարքները, փաթաթել սուրբ կտավով ու թաղել բլրակում:

Տերունական տոնի ժամանակ կրկին հավաքվում էին մեծ խմբերով՝ նույն նահատակների հիշատակի համար»:

Հավատացյալ զորավարը կոչվեց Թեովփիլոս և, արձակելով գերիներին, վերադարձրեց «Կրիական գետի ափը, կամրջանման նավահանգստի մոտ», որը, կարծեմ, Թարթառի գետաբերանի մոտ է, և մինչև օրս այնտեղից ձորեր են անցնում դեպի Կուր գետը, որից այն կողմ բնակվել էր հոների թագավորը: Լսելով զորավարի մասին՝ նա կանչեց և նահատակեց նրան 30 մարտիկների և երկու քահանաների հետ միասին, իսկ նրա որդիներին ուրիշ շատ մարդկանց հետ ուղարկեց տարբեր կողմեր:

Դար ու կես անց, քաջ Ջվանշերի իշխանության օրոք, Իսրայել անունով մի հոգեկիր մարդ ճգնում էր Աստղաբլուրի մոտ «Մեծկունիք գավառի վերին կողմում, մի բարձրավանդակ լեռան վրա իր **Գլխի վանք** մենաստանում», որը Չարաբերդի լեռներից մեկն է, բայց չգիտեմ, թե Գլխի վանքի որն է և ինչ պատճառով է այդպես կոչվում: Ինձ թվում է՝ լեռան պատճառով է ասվել Գլուխ, ինչպես որ Կատարի վանքը Դիզափայտում: Այնտեղ նա հայտնաբերում է նշխարքները և «շտապ հասնում է եպիսկոպոսանոցի եկեղեցական ավանը», Դավիթ եպիսկոպոսի մոտ ու պատմում եղելությունը: Կաթողիկոսի հրամանով նա ուրիշների հետ միասին գնում և գտնում է թաքցրած նշխարքները, որոնց մասին մենք կխոսենք ստորև, Մեծարանի աշխարհագրության մեջ: Այնտեղ մենք կպատմենք Իսրայելի ձեռքով կողովը այս Գլխի վանք բերելու մասին, ուր և հետագայում փոխադրվեց մեսրոպյան խաչը, որը գտավ Գիսում: Տարիներ անց (677—682) Հայաստանից բերում է մեր Ս. Լուսավորչի ծնոտի մի մասը Հեղինե տիկնոջ միջնորդությամբ, որը Աղվանից տանից էր, Գրիգոր Մամիկոնյանի՝ այն ժամանակվա հայոց իշխա-

Ռապետի և Ըշխարքները Թորդանից Վաղարշապատ փոխադրողի ճարսը:

## ՍԻՍԱԿԱՆ ԳԱՎԱՌ-ՂԱՅՆԱՂ

116. Այն երկիրը, որ տեղադրված է արևմուտքից Մեծկողմանքի, իսկ արևելքից Վայկունիքի միջև, և որի միջով երեք վտակների միավորումից հետո սահմանով իջնում է Թարթառ գետը դեպի հարավ մոտ 12 մղոն, հետո թեքվում դեպի արևելք, պետք է Արցախի **Սիսական** գավառը լինի, նույն ինքը **Սիսական ոստանը և Սիսական գավառը,** որը այդպես է կոչվում Սյունիքին մոտ լինելու պատճառով: Նրան հարավից սահմանակից է Խաչեն գետի ակիզբը, որի հարավում էլ գտնվում է Հաբանդ գավառը:

Այսպիսով, թեև պատմիչի տեղեկությունները սակավ են, բայց դրանք ցույց են տալիս, որ Սիսականը պետք է ընկած լինի Վայկունիքից հարավ-արևելք, քանի որ, ինչպես վերևում նշեցինք, բաղանիկեցիների մասին ասվում է, որ նրանք նվաճել են Բերձորը, Վայկունիքը, Սիսականը, Հաբանդը, Ամարասը և այլն, իսկ երկրորդ անգամ (841 թ.) վնաս են պատճառել **Սիսանձորին** և Ամարասին. այս գավառը Սիսանձոր է կոչել Աղվանից պատմիչը, իմ կարծիքով՝ Թարթառի այդտեղով հոսելու պատճառով: Միջին դարերում այն համարվեց Խաչենի վերին մասը, որը Հանդաբերդի տերերի ժառանգությունն էր: Մեր նախնիները Սիսական գավառում այդ անունով չեն բոլորովին չեն հիշատակում, բայց այդ նույն **Ոստան** անունը հուշում է, որ այդտեղ վաղնջական ժամանակներից սիսական իշխանների կողմից պետք է հիմնադրված լինի մի հզոր քաղաք կամ դղյակ: Ոչ մի տեղ չի հիշատակվում երկրամասի գավառական նոր անունը: Ինձ թվում է, որ ··ա **Ղայնաղ** երկիրն է, որի

հետ միասին կաթողիկոս Եսայի Ջալալյանը հիշում է Չարաբերդի վրա իշխող մի Բեկի, որը լեկերի պատճառով փախչում է նրա թիկունքում գտնվող Ծար երկիրը: Բայց և՛ սա, և՛ ամբողջ գավառը (վիճակը) հետազոտման կարիք ունեն: Գավառում նշվում են Մռավի հարավից և Յանշախի սկզբից **Քեշիքենդը**, սրանից հարավ **Աղտավանը**, սրանից էլ հարավ, Թարթառի մոտ՝ **Ծապոն**, սրա ելքի հյուսիսային կողմում՝ **Ոռաքաղը**, արևմուտքից, վերջինի աջ կողմում, գետի հարավում՝ **Քոզտուն** կամ **Քոստին**: Ըստ ռուսական աշխարհացույցի՝ այդ Ոռաքաղը, ըստ իս, Հարու բերդի տեղն է, որը հիշում է Մխիթար Գոշը[42]: Այն գրավել և ավերել է Ելտկուզը, քանի որ այլ քարտեզում (տախտակ) նրա տեղում նշված է **Ղարի-քյոփրիվ** անունով կամուրջը, որի վրայով լեկերը 1722 թ. անցկացրին Վարանդինից և Խաչենից վերցրած գերիներին:

117. Վերին Խաչենի իշխանների օրոք, ԺԲ—ԺԳ դարերում, նրանց գահն ու ամրոցը **Հաթերքն** էր, որը գրվում է նաև **Հայթերք** և **Խաթերք** անուններով: Այն ցարդ կոչվում է նույն անունով և գտնվում է Թարթառի ափին, բայց թե որ կողմում՝ ճշգրտությամբ չի նշվում: Այստեղ ավելի պատվավոր էր իշխանը, քան սահմանամերձ շրջանից շատերը, ինչպես որ մեզ հնարավորություն է տալիս գուշակելու Մխիթար Գոշը իր Դատաստանագրքի հիշատակարանում, 1184 թ. «Խաչենի կողմերում քիչ թվով իշխաններ մնալու ժամանակ, կրոնավոր Վախտանգի Հասան անունով որդու և նրա որդի Վախտանգի ժամանակներում Հաթերք անունով ղղյակին տիրում էին այլ իշխաններ[43], որոնց և ինքն ապավինել էր, ճեղվելով Գանձակի տաճիկներից, Աղվանից Ստեփանոս կաթողիկոսի սադրանք-

---

[42] Հայապատում, էջ 339:

[43] Մխիթար Գոշ, Գիրք դատաստանի, Երևան, 1975, էջ 25:

ներից, ինչպես որ ցույց է տալիս Կիրակոսը[44]: Իսկ ինքը քողարկելով ասում է «այն հալածանքների մասին, որոնք հասան մեզ ոչ թե օտարներից, այլ հարազատներից»: Եվ այն գրքերը, որոնք սկզբում նվիրել էր Ստեփանոսը, ընծայում է Հասանի որդի Վախտանգին, որովհետև նրա հայր Հասանը, ըստ այդ հեղինակի վկայության և Դաղիվանքի արձանագրության, 40 տարի իշխելուց հետո ճգնում էր այն մենաստանում: Նույնպես և նրա կինը Մամախաթունը՝ Կյուրիկե երկրորդ արքայի դուստրը, որի համար էլ նրանց որդի Վախտանգը կոչվում է թագավորազն և Հաթերքի ու ամբողջ վերին Խաչենի տեր: Սրա որդիները՝ Հասանն ու Գրիգորը, ծնված Քուրդ մեծ իշխանի դուստր Արզու խաթունից, երբ անժամանակ սպանվեցին նրա ազգակիցների կողմից ԺԳ դարի առաջին քառորդին, Հաթերքը տվեց իր ժառանգներին՝ մեծ խնամակալ (աթաբեկ) Իվանեին, 1226 կամ 1227 թ., որը նույն տարին էլ մեռավ, իսկ նրա մահից հետո իշխանությունն անցավ նրա տոհմի մերձավորներին՝ Հանդաբերդի և Ծարի իշխաններին:

Հետագայում այդ տեղի մասին հիշատակում է Առաքել պատմիչը, որն ասում է, որ 1576 թ. այլ գաղթականների հետ Հաթերք գյուղից Պարսկաստան են չվում եղբայրներ Օղլան քեշիշը և Ղարաբեկը: Այժմ մի գեղեցիկ եկեղեցի կա Հաթերքում, որտեղ պահվում է մի անվանի խաչ տեղի անունով:

118. Հաթերքի մոտ պետք է փնտրել **Խաթրավանքը** կամ **Խթրավանքը**, թերևս հենց ավանի անունով, որը, ինչպես ասացինք, սկսվում է **Խ** տառով և վերջանում հոգնակիի մասնիկով: Թերևս այն պետք է լինի Թարթառի հարավում Վայկունիքի վերջում, որտեղ Քիբերդի աշխարհագրությունը նշում է **Չիրիքդար վանքը**: Պատմիչները այս մենաստանը չեն հիշա-

---

[44] Կիր. Գանձակեցի, էջ 209:

տակում, որով և շինարարության պատմությունն ու ժամանակը անհայտ են մնում, միայն արձանագրությունների միջոցով պարզվում է, որ նա բարգավաճման է հասնում ԺԲ—ԺԴ դարերում, որովհետև նրա կողքին, **Ջումի** կամ **Խումի** կոչված խաչվեմի վրա կա Վասակի եղբոր՝ վերոհիշյալ Վախտանգ կրտսերի մասին հետևյալ հիշատակությունը. «Երբ ՈԾ (1201) թվականն էր, Վասակ բարեպաշտ իշխանիկը՝ Կյուրեկ թագավորի թոռը, Հաթերքի, Հանդաբերդի, Հավքախաղացի տեր Սակոի (Վախտանգի) թոռ Հասանի որդին, նույն աթոռակալ Վախտանգի եղբայրը, խաչեր է բերում, բայց ժամանակ չունենալու պատճառով չի կարողանում կանգնեցնել, որովհետև գնում է Գոլաստան և Աստծու օգնությամբ այն գրավում անօրեններից և այնտեղ բնակեցնում իր որդուն, իսկ ինքը նահատակվում է քրիստոնյաների համար: Նրա վրա շատերի աչքի առաջ լույս իջավ, իսկ հետո ՈԾ թվին, նրա որդիներ Խոյդան ու Խոչախը նրա հոգու հիշատակի և իրենց կյանքի երկարատևության համար հուշարձան կանգնեցրին: Ովքեր երկրպագում են, թող հիշեն իրենց աղոթքների մեջ»:

Պահպանվել են նաև Զաքարեի և Իվանեի քրոջ՝ Խաչենի Գրիգոր իշխանի կնոջ՝ Դոփի արձանագրությունները, որոնցում ասվում է, որ նա ՈՀԴ (1225) թ. կառուցում է գավիթն ու մատուռը. «ՈՀԴ թվին ես՝ Սարգսի դուստրս, Զաքարեի և Իվանեի քույր Դոփս, կառուցեցի այս գավիթն ու մատուռը, ավետարան տվեցի և իմ հոգու համար ընծայեցի Հանկաբակն ու Հակուռին: Աստվածածնի երեք օրերը պատարագ արե՛ք. ով որ խափանի, Աստծուց թողություն չունի»:

Եկեղեցում կան նաև այլ ազնվազարմ տիկնոջ հիշատակություններ, այն է՝ Տարսայիճ Օրբելյանցի դուստր Ասփերինը, ԺԳ դարի վերջին, ինչպես որ նա արձանագրում է. «Քրիստոսի շնորհիվ ես՝ արքայաշուք իշխան Տարսայիճի և իմ մոր Մինա

խաթունի դուստր Ասփես և այս լուսանվեր եկեղեցու շինարարության ժամանակ ինձ՝ քրիստոսապսակ կնոջս, օգնություն ցուցաբերած մեծափառ իշխան Գրիգորը, որ կամեցավ (՚) մեծ քահանայապետ Տեր Հովհաննեսի միջոցով, իմ արդար ունեցվածքի հաշվին կառուցեցին բեմբ սեղան՝ Քրիստոսին զոհեր մատուցելու համար, որպեսզի Ծննդյան, Տյառնընդառաջի, Զատկի, Վարդավառի, Աստվածածնի, Սուրբ Խաչի տոների թողոր շաբաթ և կիրակի օրերին բոլոր եկեղեցիները կատարեն այդ տոնը ինձ համար: Ես տվեցի նաև մեր վերին ընտիր հողն ու ջուրը: Մերոնցից կամ օտարներից որևէ մեկը եթե խափանի պատարագը, թող հեռացվի (Աստծու) Որդու փառքից»:

Ջախակողմյան խորանը կոչվում է Ս. Պրոկոպիոս, որի մոտ պետք է լինի Տեր Հովհաննեսի գերեզմանը և արձանագրությունը. «Սուրբ Պրոկոպիոս. այս եկեղեցին կառուցող մեծ տեր Հովհաննեսին՝ Դոփի որդուն, մեծ իշխան Հասանի եղբորը, հիշեցե՛ք ձեր աղոթքների մեջ»: Աջակողմյանը Ս. Մինասն է, որտեղ կա Մինա տիկնոջ հիշատակը, գուցե և տապանը. «Հանուն Քրիստոսի ձեր աղոթքների մեջ հիշեցե՛ք Մինախաթունին՝ Ջալալ մեծ իշխանի դստերը և Տարսայիճի կնոջը»:

119. Վանքի ներքևում Ասփեի կարևոր շինության հիշատակի համար կանգնեցված է անթվակիր խաչարձան. «Աստծու կամքով ես՝ մեծ իշխան Տարսայիճի և Մինախաթունի դուստրըս, աղվանից տեր մեծ իշխան քաջ Հասանի որդու՝ հսկայազոր Գրիգոր իշխանի կինս, կանգնեցրի այս խաչը, շինեցի կամուրջը, որպես հիշատակ մեր, անցյալի, ներկայի և ապագայի մարդկանց հոգիների համար»: Բայց այս նոր կամուրջի մասին մեզ ոչ մեկը տեղեկություններ չի տալիս, միայն Հարի կամուրջը նշում են Հյուրաթաղ գյուղի մոտ, մի այլ կամուրջ էլ՝ Յանշախի մոտ: ԺԴ դարի Խութավանքի արձանագրություններում ասվում է այն մասին, որ Խաչենի Սարգիս իշխանը զան-

գակ է դրել այս և այլ վանքերում: Արձանագրությունների տեղերը անծանոթ են. **Հանկաքակի երկիրը** թերևս կարելի է ույղել **Յանկաքակ** ձևով, իսկ **Հակուսին** կամ **Հակուռին**, ըստ մի այլ օրինակի, թերևս Բերձորի Հակարի գյուղն է: Իսկ **Զումի** կամ **Խումի** խաչը, որը այսպես տարբեր ձևով են գրում Շահխաթունն ու Ջալալյանը, թվում է, որ տարբեր է **Պում** գյուղից, որտեղից էր Աղվանից կաթողիկոս Փիլիպպոսը ԺԶ դարի կեսին:

120. Մյուսը էլ ավելի հռչակված և հին մենաստանն է, Թարթառի ձախ կողմում, **Լաչին գայա** լեռան դիմաց: **Խութավանքը** Խութ գյուղի անունով է, որը հիշվում է արձանագրություններում. այն հաճախ կոչվում է **Դադի** կամ **Դադոյի վանք** և ոչ թե **Թադեի**՝ մեր մեծ Առաքյալի անունով, այլ նրա աշակերտի անունով, որի մասին ասում է այդ վայրերին ծանոթ Վանական Վարդապետը. «Դադին, որը յոթանասունից մեկն էր, Թադեոսի հրամանով գնաց մեծ Հայք ու հյուսիսի կողմերը և, լսելով Աբգարի մահվան մասին, վերադարձավ, մտավ Փոքր Սյունիք, որտեղ էլ թաքուն ճգնելով վախճանվեց: Այդ տեղում վանք կառուցվեց և կոչվեց նրա անունով»: Այս բանը հիշում է և Միխայել Ասորին ու նրա մահվան տեղը **Դադիս** կոչում[45]: Այդ արձանագրություններում գրված է և **Տաթեի վանք** ձևով:

Վանքի շինարարության ժամանակը հարկ է դնել առաջին դարում, ինչպես որ Գոշը **Առաքելադիր**[46] է կոչում այդ ուխտը: Գրքերում առաջին անգամ հիշվում է Աղվանքի պատմության մեջ, Թ դարի սկզբին, երբ Ներսես Փիլիպպյանը Աղվանքի գահի պայազատներին «տպանեց մի ժամում, **Խորաձորում**, որը կոչվում է Դադոյի վանք»[47]: Տեղի հիման վրա նկարագրվում է

---

[45] **Միխայէլ Ասորի**, Ժամանակագրութիւն, Երուսաղէմ, 1871, էջ 33:
[46] Հայապատում, էջ 386:
[47] **Նոյնը**., էջ 340:

վանքի դիրքը, որը շրջապատված է եղել գեղեցիկ և պտղատու ծառերով: ԺԲ դարի կեսին Գանձակի Չավլի իշխանը, հարձակվելով Խաչենի կողմերի վրա, «այրեց նաև սուրբ առաքելադիր վանքը, որը կոչվում է Դադուի վանք»[48]: Կիրակոս պատմիչը հիշում է «Դադոյի վանքի եպիսկոպոս Տեր Գրիգորիսին»[49], որը կաթողիկոսի հետ գնաց Ծար՝ ի հերքումն Դավիթ մոլորեցուցչի: Բնակարաններն հետ միասին թեպետ կանգուն է այս մենաստանը, **բայց ամայի է**: Կանգուն է մնացել նաև սրածայր կաթողիկեով եկեղեցին՝ կառուցված Վախտանգ Բ-ի տիկնոջ Արզու խաթունի կողմից 1214 թ., իսկ նրա շուրջը կան մեծապատիվ մարդկանց գերեզմաններ: Նրա խորաններից մեկում գտնվեցին ձեռագիր մատյաններ: Անխաթար է մնացել բարեպաշտ տիկնոջ գեղեցիկ արձանագրությունը. «Ամենակալ Աստծու և նրա միածին որդի Հիսուս Քրիստոսի շնորհիվ ու ամենասուրբ Հոգու պարգևներով ես՝ Քրիստոսի աղախին Արզու խաթունս, մեծ իշխանաց իշխանի դուստրս, Հաթերքի և ամբողջ վերին Խաչենի տիրոջ թագավորազն Վախտանգի տիկինս, մեծ հույսով կառուցեցի այս սուրբ եկեղեցին իմ ամուսնու, զավակներ Հասանի ու Գրիգորի գերեզմանոցի տեղում, որոնք անժամանակ վախճանվեցին, որովհետև իմ մեղքերի համար Աստված ինձ խրատեց և իմ գլխից վերացրեց երկուսի վայելուչ պսակը, քանի որ իմ անդրանիկ որդին՝ Հասանը սպանվեց պատերազմում թուրքերի ձեռքով քրիստոնեական հավատի համար, և երեք տարի անց իմ կրտսեր որդի Գրիգորը, բնության պարտքը հատուցելով, գնաց տիրոջ մոտ՝ անմխիթար սգի մեջ թողնելով թշվառ մորը: Բայց որովհետև իրենց կենդանության ժամանակ նրանք մտադրվել էին այդ տեղում կառուցել եկեղեցի, բայց

---

[48] Անդ., էջ 353:

[49] **Կիր. Գանձակեցի**, էջ 327:

չհասցրին անժամանակ մահվան պատճառով և ինձ ավանդեցին՝ անպայման կատարել իրենց սրտի փափագը։ Եվ հանձն առնելով ես մեծ հույսով ու աշխատանքով կառուցեցի այս քառավարանը՝ նրանց, իմ դուստրերի և իմ ամբողջ ցեղի հոգու փրկության համար։ Այժմ աղերսալի աչքերով խնդրում եմ բոլոր նրանց, ովքեր երկրպագում են այս խորանին, թող հիշեն իրենց աղոթքների մեջ վերնում գրվածը։ Ավարտվեց ՈԿԳ թվին ի փառս Աստծու և սուրբ ուխտի նորոգության համար։ Եվ եղբայրներիս կամակցությամբ հաստատեցինք սուրբ եկեղեցու ժառանգության սահմանները՝ Ապահեն, Եղնարածանց, Բչան, Վայոց ձորի Կանաչավոր գյուղերն իրենց ագարակներով ու սահմաններով, ինչպես և Արփա երկու տունը։ Ավագ խորանի պատարագը վերը գրվածի համար անխափան պետք է կատարվի։ Եթե որևէ մեկը՝ լինի իշխաններից, առաջնորդներից կամ որևէ այլ անձանցից, փորձի խափանել այս հաստատված կարգը, թող խափանվի նրա հույսը Քրիստոսի նկատմամբ, և նա դատապարտվի Աստծու կողմից»։

121. Կան և Վախտանգի ծնողների՝ Հասանի և Մամայի հնագույն արձանագրությունները. «Աստծու կամքով ՈԼԱ (1182) թ. ես՝ Վախտանգի որդի Հասանս, Հաթերքի, Հանդաբերդի, Խաչենաբերդի, Հավքախաղացի տերս, որպես իշխանապետ մնացի Խ տարի, շատ պատերազմներ մղեցի և Աստծու օգնությամբ հաղթեցի իմ թշնամիներին։ Ես ունեցա վեց որդի. բերդերն ու գավառները տվեցի նրանց ու ես եկա վանք, իմ եղբայր իշխան Գրիգորեսի մոտ և կրոնավոր դարձա, մեծ չարչարանքով ու բազում հնարքներով Հագուից (կամ Ագուից) բերեցի այս խաչքարը ու կանգնեցրի այս սուրբ նշանը, որպես հիշատակ իմ հոգու համար։ Ովքեր երկրպագում են, թող աղոթքների մեջ հիշեն»։

«Ես՝ Հասանի կին Մամա թագուհիս, Կյուրիկ թագավորի

դուստրս, որպես տեր մնացի Լ տարի: Հայրենիքը թողնելով մեր որդիներին՝ ես ու իմ ամուսինը եկանք այս վանքը, Տեր Գրիգորիսի և նրան անվանակից մեր որդու մոտ: Հանգնվեցինք ճգնավորի նման, և ես կանգնեցրի այս խաչը, որպես հիշատակ իմ հոգու համար: Ովքեր երկրպագում են, թող հիշեն իրենց աղոթքների մեջ»:

Թվում է, որ հետևյալ արձանագրությունը նվիրված է սրանց մերձավոր Վախտանգին. «Աստծու կամքով ես՝ Սմբատի որդի Վախտանգս, Հիսուս Քրիստոսի ծառաս և իմ ամուսինը՝ Քրիստոսի աղախին Հանան, միաբանեցինք Դադի վանքի հետ, մեր ծառանգությունից՝ սկսած Չիչխա ձորի բերդից մինչև Խոնցենակի այգին, տվեցինք վանքին, արեցինք նվերներ. մեծ ծախսով ու մեծ հույսով կանգնեցրինք մի մեծ խաչ: Մենք՝ քնակիչներս, Տեր Գրիգորիսը և միաբաններս, սահմանեցինք բոլոր եկեղեցիներում Հովհաննես Նանայի, Վարդանանց և Վախտանգի տոներին երկու օր ժամասացություն կատարել: Արդ, ով ընծաները և ունեցվածքը խլի սուրբ վանքից կամ խափանի ժամասացությունը, ՅԺԸ (318) հայրապետների կողմից նզովվի և մեր մեղքերի տերը դառնա»:

Թվում է, որ Վախտանգը Լիպարտյան Սմբատի որդին է, որի մասին արձանագրվել է 1265 թ. «Աստծու կամքով ես՝ Սմբատ իշխանս՝ մեծ Լիպարտի որդիս, միաբանեցի Դադի վանքի սուրբ ուխտի հետ Տեր Հովհաննեսի առաջնորդությամբ և գնեցի Խրնտաշանց այգին, Եղեգիսում իմ գնած ձիթհանքը, ստացված արդյունքները, կանաչապատ գյուղը և այլն, որոնք հաստատեցի բարի ծախսով, տվեցի սուրբ կաթողիկեին: Տեր Անաստասը և մյուս միաբաններս սահմանեցինք մեկ ժամերգություն բոլոր եկեղեցիներում Զատկի կիրակիի հարության օրը: Ով որ խլի մեր տվածը կամ ժամերգությունը խափանի, ՅԺԸ հայրապետների կողմից նզովված լինի»:

Այդ նույն ժամանակ և Մամքանը՝ երկրի մեծ իշխան Հասանի կինը, շնորհում է բազում կալվածքներ, 1267 թ. «Չժջ թվին Աստծու օգնությամբ ես՝ արի Հասանի կին Մամքանս և մեր որդի Գրիգորը, լինելով այս տեղերի տերերը, որոնք հաստատել էին մեր իշխանները, մեր սուրբ միաբանությանը տվեցինք Չոլբեկանց, Ծամնուտանց Զվատեղը: Եվ՝ Գրիգորս, մեր բաժին Ծագունանց հողերը տվեցի իմ որդի Տեր Սարգսին: Ով որ խլի սուրբ միաբանությունից, կդատապարտվի Աստծու կողմից: Մեր միաբանները սահմանեցին սուրբ Ստեփաննոսի տոնի ժամերգությունը, որը նվիրված է իմ մորը և իմ կնոջը՝ Ասփենին: Ով որ ժամերգությունը խափանի կամ ընծաները խլի, կդատապարտվի Աստծու կողմից: Բացի դրանից, մեր բաժին Մոխրաբակը ևս տվեցինք սուրբ միաբանությանը»:

Սրանց սերունդները ԺԴ և ԺԵ դարերում ամրացրել ու ավելացրել են նվերները, ինչպես որ արձանագրվում է ընդարձակ կերպով. դրանց մեջ մեզ համար կարևոր են վանքի և Վախտանգաց ու Հասանյանց տոհմի մասին տեղեկությունները, որի համար դրանց կանդրադառնանք ստորև:

122. Դոփի որդիներն ու թոռները և նրանց կալվածքը.

«Իշխանաց իշխան Սարգսի դուստր, բարեպաշտուհի Դոփը, որի ամուսինն էր բարեպաշտ Խաթրա Գրիգորը, իսկ նրանց որդին՝ քաջ ու հաղթող զորավար, Ականի, Հանդաբերդի, Սոթքի, Ծաղղաքի և բազում այլ գավառների մեծ իշխան Հասանը, ամենից շատ սիրում էր իր հայրենի Ծար գյուղը և քաջության պարգևները, որոնք տրված էին հայոց աշխարհակալների կողմից որպես արյան գին: Նա ուներ Քրդի դուստրը Մամքանին, իրենց որդի բարի Գրիգորին. նրա ամուսինն էր Ասփը՝ Սյունյաց կողմերի իշխան, Տարսայիճ կոմսի դուստրը: Նա շատ ունեցվածքով ու ծախսերով փարթամացրեց Ստաթե վանքի սուրբ միաբանությունը, որովհետև կառուցեց տաճարը,

դարպասը և այլ ուրիշ արդյունավետ գործեր արեց: Իսկ մյուս որդին՝ Տեր Հովհաննեսը, կառուցեց Գետամեջ սուրբ վանքը: Գրիգորի որդի Վահրամը և սրա որդի Սարգիսը ևս բազում օգտակար գործեր կատարեցին: Դրանցից մեկը Տաթե, Խթրի, Գետամեջի, Ծար գյուղաքաղաքի վանքերի գեղեցիկ զանգակները են, որ կան մինչև օրս: Սրա որդին էր Հասանը, որից էլ սկսվում է Դոփի ցեղը, որոնք են՝ Ճահճշահը՝ Ուլուբեկանց Պապը, Ալբուղիհը՝ Հայտնեցուց Պապը, Ջահանշեհը՝ Ճահանղեցուց Պապը: Հասանի որդին էր Ապուղենը, նրա որդին՝ Դուրսուն, իսկ նրա որդին՝ Այտինը: Եվ սրա ժամանակ, իսմայելացիների հզորացման, հայոց թագավորության թուլացման ու հայոց իշխանների ցիրուցան լինելու ժամանակ, այլազգիները հարձակվեցին և Մուլք մեծ իշխանին՝ Բեթալ Հասանին, ամորձատեցին «մալ արարին»: Պարոն Այտինը գնաց դիվան, երեք տարի աշխատեց և, շատ բան տալով, այլազգիների ձեռքից ազատեց վանքերը, որոնք Տերը կտա իրեն որպես վարձ իր ծառայության համար»:

«Ամենակալ Աստծու և մեր Տեր Հիսուս Քրիստոսի կամքով գրվեց մեր այս իշխանական հրամանը. մենք՝ Տուրսունս, Սետեն, Պոոշը, Գրիգորը, Հասանը, մեր եղբայրներն ու որդիները, այս հաստատ հրամանը տվեցինք Տեր Ավագ Եպիսկոպոսին ու նրա եղբայր Մանվել աբեղային՝ նրանց լավ հավատարմության համար, որպեսզի մեր հայրենի աթոռ Դադիվանքը, Խաթրավանքը, Գետամեջը, որ մեր գերեզմանատունն է՝ մեր պապերից մեզ մնացած, նրանցը լինի, քանի որ այդ վանքերում մարդ չկար, որոնք սկզբում չեն էին պահում ու լուսավորում եկեղեցիները. այդ պատճառով ուղևորվեցինք և դրանք նվիրեցինք սուրբ աթոռին, նրանց հանձնեցինք նաև երկու իշխանությունը՝ եպիսկոպոսությունը և պարոնությունը: Ինչպես որ մեծ կաթողիկոս Տեր Վարդանը Դադիվանքը, Խաթրավան-

քը, Հաղպատը իր վիճակով տվել էր Տեր Աթանասին ու Տեր Սարգսին, նույնպես և այս հոգևոր Տեր Գրիգոր կաթողիկոսը այս աթոռը հաստատեց վիճակով ու շրջաբերականով»:

«Ամենակալ Աստծու կամքով ես՝ Սեյտիս՝ պարոն Հասանի թոռս, պարոն Ծանշիի որդիս, մենք՝ Գրիգոր Հասանն, Պեկին, Այթունքը՝ պարոն Վահրամի որդիները, պարոն Հասանի թոռները, ես՝ Այտին՝ պարոն Տուրսունի որդիս, պարոն Աղբուղի թոռս, ես՝ Ծանշես՝ պարոն Հասանի որդիս, պարոն Ջահանշի թոռս. մենք՝ չորս եղբայրներս, մեր վանքերից տվեցինք Ապահենը, Խութը, Խոզենակը՝ իր չորս սահմաններով, սկսած Չափարի հանդից՝ Ջագունաց ագարակ գյուղի, Բոնչի աղբյուրի, Թողանանց գետի, Պետրոսապահի հետ միասին, իսկ մեր պապերը տվել են Սոխանանցը, Ծովատեղը, Ջաջորանցը, Չալբեկանցը, Յրդնոտնը, Շիմանանցը, Գրիգորաթաղերը, Դաղիվանքը՝ իր քոլատակերով, Հերանանց Հակառակաբերդով, Նավի աղբյուրով, Բերդաքարով, Կռապաշտի ձորով, Ողնով, ինչպես նաև Ծաղկանցը, Եզնարածանցը, Խոզենակուց մեծ այգին Մանանաձորի հետ միասին: Տվեցինք Ավագ Եպիսկոպոսին, որը մեր մեծն է, քանի որ նրա պարտականությունն է ղեկավարելը: Նա Աստծով ազատ է, իսկ եթե ուրիշ մարդ է ղեկավարում, տասանորդը անպայման առնում և տալիս է վանքին: Սա եղավ մեր առաջին ուխտը Աստծո և սուրբ Թադեոսի առաջ: Ով մեզնից հետո այս կարգը խաթարի կամ կալվածքները խլի՝ լինի մեր որդիներից, թոռներից, թե ազգականներից, Աստծու առաջ մեղապարտ է, ևերես, ՅԺԸ հայրապետների կողմից նզովված, Կայենին և Հուդային դասակից: Իսկ եթե այլազգի և թուրք լինի, իր հալալը թող հարամ լինի, և իր մարգարեի (փեղամպար) կողմից նզոված լինի. ամեն»:

Այս ամենից հետո նոր նորոգվող տեղում ԺԶ դարի կեսին

արձանագրված է մի խաչվեմի վրա, երեք վանքերի **Երկուէրիս** կոչված տեղում:

«Հանուն Աստծու ես՝ Տեր Գրիգորս, երեխա ժամանակվանից եկա եկեղեցու դուռը, շատ աշխատանք կատարեցի, Ծանոթ բամաղի իշխանությամբ վանքն ավերեցին, ես չհամաձայնեցի, նրա շենը գնեցի և շինեցի. կառուցեցի երեք ջրաղաց, հիմնեցի երեք այգի և եկա սուրբ Առաքյալի դուռը, շինեցի Խութը, որ այս եկեղեցու ունեցվածքն է համարում. այգիները, բանջարանոցները, ջրաղացները և այլ բաներ եկեղեցուն նվեր տվեցի: Արդ, ով որ այս գյուղերը կամ կալվածքները ջանա խլել սուրբ Առաքյալից, ՅԺԸ հայրապետների կողմից կնզովվի, Հուդայի, Կայենի և Քրիստոսին խաչողների բաժինը կստանա, մեր մեղքերի տերը կդառնա: Իսկ ով որ շեն պահի և մեզ հիշի, Քրիստոսից հատուցում կստանա. ամեն: ՈԷ թվին»:

123. Այս Գրիգորը վանքերի առաջնորդների մեջ արձանագրվածներից վերջինն է, իսկ մյուսներն են՝

Տեր Գրիգորիս՝ Վախտանգ Ա-ի որդին, 1181.

Տեր Հովհաննես, 1265.

Տեր Անաստաս, 1265.

Տեր Սարգիս՝ Հասան Գ-ի որդին, 1267.

Տեր Վարդան, ԺԵ դարում.

Տեր Ավագ, ԺԵ դարի կեսին.

Տեր Գրիգոր, 1558:

Իսկ երեսունից ավելի հիշատակված վայրերի արձանագրություններում, թեև շատ փոքր ագարակներ կան, բայց մեզ հայտնի չեն նաև շատ գյուղեր, ձորեր, բերդեր, ինչպես, օրինակ՝ **Չիզխաձորի բերդը, Մանանայի ձորը, Սոխանանց ծովանոց տեղը, Ցրդնոտնը** և այլն, ինչպես նաև **Հագուն** կամ **Ազուն**, որը հռչակավոր վայրերից է թվում, որտեղից էլ քաջ Հասանը մեծ հաղթանակ է տարել մեծ խաչքարը, չարչարանքով ու բազում հնարքներով բերել է մեծ խաչքարը,

որի վրա մի այլ ընդօրինակող այդ տեղի անունը գրում է Աղու կամ Հաղու ձևով։

124. Չգիտեմ այդ նույն Դաղոյի, Խթրավանքի, թե մանավանդ ուրիշ վանքերի հետ է **Խաղայի տունը**, որը հիշում է Կիրակոսը՝ վարդապետներից ոմանց մասին ասելով. «Խաչենի սուրբ վարդապետներ, միմյանց հարազատ Գրիգորիսը և Տեր Եղիան, որը (վանքը) Աստված զարդարել էր երկու մարդով, այս աշխարհից տեղափոխվեցին Քրիստոսի մոտ և գտնվում են աստվածափառ Խաղայի տան պահեստում. առաջինը վախճանվել է ՈՁԷ (1238) թ., իսկ Եղիան՝ ՈԴԸ (1249) թ.»[50]: Սրանց տապանագիրը ընդօրինակում են Ջալալյանները, բայց չեն նշում որոշակի տեղը, այլ Խթրավանքի արձանագրությունների թվում նշում են առանց վերնագրի. «Այս է գերեզմանն ու շիրիմը վեհիմաստ ու արդյունավոր վարդապետներ, սուրբ միաբանության առաջնորդներ Գրիգորի և Տեր Եղիայի. ովքեր կմտնեն խորանը, թող հիշեն հանուն Քրիստոսի, աղաչում եմ ձեզ՝ նաև Գրիգոր եպիսկոպոսին հիշեցե՛ք հանուն Տիրոջ»: Երկուսն էլ գտնվեցին Գանձասարի եկեղեցու օծման նավակատիքի ժամանակ, և ինչպես խոսքերից երևում է՝ Եղիան վախճանվել է 1249 թ., որը այն վանքի առաջնորդն էր, որի տեղը մեզ անծանոթ է, բայց ստույգ երևում է, որ անունը Թադեոսի աշակերտի անունով է, որի մասին ասում է նույն Վանական Վարդապետը. «Եղիշեն և Խադան յոթանասունից երկուսն են, որոնք Թադեոսի հրամանով գնացին Աղվանքի կողմերը և այնտեղ վախճանվեցին»[51]: Այսպես վկայում է Քրիստոսի երեք

---

[50] **Կիր. Գանձակեցի**, էջ 270:

[51] Տե՛ս **Միխայէլ Ասորի**, Ժամանակագրութիւն, Երուսաղէմ, 1871, էջ 33:

աշակերտների մասին, որոնք հյուրընկալվել են Արցախի ան-
ձուկ մարզում:

## ԽԱՉԵՆ

125. Անվանի գավառը, ինչպես նաև **Խաչենի աշխար-հը**, հիշվում է Դ դարից **Խաչյանք** տոհմի անունով, Ներսես Մե-ծի և Արշակունյաց արքաների գահնամակում, որը հետագա-յում երկար ժամանակ անծանոթ է մնացել պատմություննե-րում: Այն միջին դարերում իր իշխանությունը տարածեց նաև վերը նկարագրված Թարթառի հյուսիսային կողմերի գավառնե-րի վրա, հասնելով մինչև Գեղամա ծովի ափերը և Զորբերդի ամ-րոցը գավառը, մինչև որ այդ երկրամասը կոչվեց **Փոքր Սյու-նիք**, որը հայոց նահանգներից (աշխարհ) մեկն էր: Առավելա-պես նրա միջին և հարավային կողմերը կոչվում էին **Խա-չենք** կամ **Խաչենի երկիր**՝ սրանում գտնվող գլխավոր բնակա-վայրի անունով. սա **Ներքին Խաչենն է**:

Աշխարհագրի բառացանկում ասվում է. «Խաչենը սուրբ Կարապետի գլուխն է, Գանձասարն է»[52], որը վկայում է այն մասին, որ այնտեղ է եղել երկրամասի կենտրոնը, այսինքն՝ Խաչենի բերդը, թեև այժմ անհիշատակ է: Գանձասարի ՉԻ (1271) թ. մի արձանագրությունում այն կոչվում է Սուրբ Խա-չեն, որը ապացուցում է, որ այն իր անունն ստացել է սուրբ Փայտից (խաչից) քրիստոնեության առաջին դարերում, սուրբ Մեսրոպից ավելի առաջ: Իսկ երկրի տերությունն ու պայազատ-ները բարգավաճման են հասել Թ դարում, երբ հիշվում է նախ

---

[52] **Վարդան Վարդապետ**, Աշխարհացոյց, Փարիզ, 1960, էջ 11:

Խաչենի բերդը. Աղվանքի իշխան Վարազ Տրդատի կինը, դավադրությունից խուսափելով, «առնում է իր մնացած դստերը՝ Սպրամին (կամ Ասպրսամիկին) և գիշերով մեծ դժվարությամբ մտնում է Խաչենի բերդը... Սպրամին ամուսնացնում է Սահլի որդի Ատրներսեհի հետ, որը Հայկազյան տոհմից էր և Սյունիքի տերը», որի սերունդները հասան արքունական աստիճանի Սյունիքում և Արցախում, որտեղ կոչվեցին Փառիսոսի թագավորներ: Եվ այդ ցեղից ուրիշները Խաչենի իշխաններ ու պայազատներ դարձան, որոնցից հիշվում է ոմն Գրիգորը Ժ դարի կեսին, որը հյուրընկալվել էր Անանիա կաթողիկոսի կողմից: Եվ դրանից առաջ Պերփեռուժեն Կոստանդին կայսրը հիշում է Խաչենի իշխանին, նրան դասելով մեծաշուք իշխանների շարքը, որոնց մասին պատշաճ է համարում գրել նամակի վերնագրում:

126. ԺԲ դարի սկզբին Խաչենի պայազատները բաժանվում են երկու գլխավոր տոհմի, որոնցից մեկը տիրում է վերին Խաչենին, այսինքն՝ Վայկունիքին և Սիսականին, գահը պահելով Հաթերքում, մյուսը՝ Ներքին Խաչենին՝ ունենալով Խաչենաբերդ գահանիստը: Արձանագրություններում և պատմիչների երկերում առաջինները կոչվում են **Դերսումյանք**, իսկ երկրորդը՝ **Սակոյանք**: Առաջիններին ազգակիցներ ենք գտնում մինչև ԺԶ դարի կեսը, իսկ երկրորդինը՝ ԺԳ և ԺԴ դարերում: Դրանցից հետո երկուսը կոչվում են մի՝ Հասան-Ջալալյան տոհմ անունով, որոնցից հետագայում նշանակվեցին Աղվանքի կաթողիկոսներ, և ցարդ գոյություն ունեն տոհմի ճյուղերը: Օգտվելով դյուրըմբռնելի արձանագրություններից ու պատմություններից՝ նշանակեցինք նրանց հաջորդական կարգը, որքան որ կարողացանք. թվերից մեկը ցույց է տալիս նրանց ապրած տարիները, իսկ մյուսը՝ մահվան, որտեղ դրվում է խաչանշան (+):

Գանձասարի արձանագրություններում կարդացվում են

սրանց անվանակից այլ պալազատներ ԺԵ—ԺԶ դարերում, ո-րոնց հաջորդականությունը չկարողացանք նշանակել, ինչպես նաև հեներից շատերին, որոնք հիշատակված են Կիրակոսի կող-մից որպես հնացույն խաչենցիներ. այսպես՝ Հաղբակյանները ԺԳ դարի սկզբում, որոնք այլուր կոչվում են Վարդանանց ազգ, և Ծահապունյաց բնիկները, որոնց ճյուղագրությունը տրված է Կեչառուքի արձանագրության մեջ:

127. Փաղիսոսի թագավորների վերացումից հետո Գանձա-կի ամիրաները սկսեցին նեղել Խաչենի իշխաններին. նախ Փառլունը ձեռք գցեց գավառին, որին հակառակվեց Գագիկ Ա Բագրատունին: Բայց երկրի իշխանները, պատսպարվելով ի-րենց ամրոցներում, բռնակալներին պակաս նեղություն չպատ-ճառեցին: ԺԲ դարի կեսին, 1146 թ., Գանձակի Չավլի իշխանը «երկին գնաց Խաչենի, Տանձիքի և Առախի կողմը, քանի որ նրա ձեռքի տակ չմնացին այն դղյակները, որոնք նա առաջին անգամ առել էր. այնտեղի ազատվածներից մնացածները, ո-րոնք թաքնվել էին անտառներում, նորից են գրավում իրենց բերդամրոցները և ապստամբություն մղում տաճիկների (թա-թարների) դեմ: Այդ պատճառով նեղվելով՝ Չավլին դիմում է նրանց վրա՝ վրեժխնդրության համար. նա չնայած ամրոցները չկարողացավ առնել, բայց ամբողջ գավառը իսպառ ավերեց: Այրեց և սուրբ առաքելադիր ուխտը, որ կոչվում է Դադուի վանք, և ինքը չվեց—գնաց Մարաց աշխարհը»[53]:

Սակայն ժամանակ անց և բռնակալ Ելտկուզը «պատե-րազմը չէր դադարեցնում Խաչենի իշխանների դեմ, որովհետև երբեմն գաղտագողի գնում էր, գրավում Հաթու ամրոցը և բո-լորին առհասարակ սրի քաշում»:

Դրանից հետո իշխանները հզորացան, գերազանցեցին թա-

---

[53] Հայապատում, էջ 386:

թարներին և իրենց ցեղը խառնեցին ժամանակի ազնվագույն տոհմերի՝ Կորիկյանների, Բաղացիների, Զաքարյանների և Քուրդյանների հետ։ Եվ այդ ժամանակամիջոցում կառուցվեցին երկրի սուրբ վանքերը, որոնց գլուխը կանգնեցին անվանի և իմաստուն մարդիկ, որոնցից ոմանք գնացին Գուգարքի կողմերը և դարձան մեծահամբավ Հաղպատի աթոռի առաջնորդներ, ինչպես, օրինակ, Բարսեղը ԺԲ դարում և Հովհաննիսյանները ԺԳ դարում, ուր գնաց և Տեսումեն Խաթունը և կառուցեց Տիրամոր եկեղեցին։ Նրա հետ այնտեղ գնացին և նրա եղբայրները, որոնք այնտեղ ապրեցին և մեռան։

Սրանց եղբորորդի Հասանը՝ փաղաքշաբար Ջալալ-Դոլ կոչվածը, Խաչենի իշխանների մեջ անվանի եղավ, փառքով և շինարարությամբ աչքի ընկավ Գանձասարում, որի արձանագրության մեջ նրան և նրա հորը թագավոր են անվանում։

Ա.

ՎԱՍԱԿ

ՍՄԲԱՏ, ԳՐԻԳՈՐ (1148—50)

ՎԱԽՏԱՆԳ Ա.

ՀԱՍԱՆ Ա. (1141—1184), ՏԵՐ ԳՐԻԳՈՐԻՍ (1182)

ՍՄԲԱՏ, ԽՈՅԱԴԻՆ, ԳՐԻԳՈՐ, ՎԱԽՏԱՆԳ Բ (1182), ԳՐԻԳՈՐԻՍ,

ՎԱՍԱԿ (+1201)

ԽՈՅԱԴԻՆ, ԽՈԶԱԽ ԴԱՎԻԹ

ՎԱՍԱԿ (1237)

ՍՄԲԱՏ, ՀԱՍԱՆ Բ. (+ 1244), ԳՐԻԳՈՐ (1212))

Ա. Ա.

ՄԱՌԻ

ՏԵՐ ՀՈՎՀԱՆՆԵՍ,

ԳՐԻԳՈՐ ՀԵՃՈՒՊ (ԽԱԹՐԱ) (1255)

ՀԱՍԱՆ Գ ԴՈՓՅԱՆ, ՍՄԲԱՏ,
ԳՐԻԳՈՐ ԴՈՓՅԱՆ (1243)

ԳՐԻԳՈՐ (1275)

ՎԱՀՐԱՄ

ՍԱՐԳԻՍ

ՀԱՍԱՆ Դ

ՋՀԱՆՇԱՀ, ՇԱՀՆՇԱՀ, ԱՂԲՈՒԲԵ ՎԱՀՐԱՄ

ՀԱՍԱՆ ՍԱՅՏԻ (1480) ՏՈՒՐՍՈՒՆ (1463) ԳՐԻԳՈՐ, ՀԱՍԱՆ ԲԵԿ, ԱԼԹՈՒՆ

ՇԱՀՆՇԱՀ ԱՅՏԻՆ (1467)

×

ՋՀԱՆՇԱՀ

ՀՈՎՀԱՆՆԵՍ ՎՐԴ. (1583)

## Բ

## ՆԵՐՔԻՆ ԽԱՉԵՆՑԻՔ

ՎԱԽՏԱՆԳ Ա

ՀԱՍԱՆ ՄԵԾ

ԽԱԹՈՒՆ, ՎԱԽՏԱՆԳ ԹԱՆԿԻԿ († 1213),

ՍԻՆԵՔԵՐԻՄ, ՍԵՎԱԴԱ

ՄԱՐԻՆԵ, ՆԱՍՐԱ ԴՈԼ, ՀԱՍԱՆ ՋԱԼԱԼ ԴՈԼ, ՋԱՔԱՐԵ, ԻՎԱՆԵ
(1214—1261)

ՏԵՐ ՀՈՎՀԱՆՆԵՍ (1271)

ՄԱՄԱ ԽԱԹՈՒՆ, ԱԹԱԲԵԿ (1261—82), ՌՈՒԶՈՒՔԱՆ կին,
ՄԻՆԱ ԽԱԹՈՒՆ

ՊԱՐՈՆ ՋԱԼԱԼ
(Երկու Ջալալների միջև պակասում են 2 կամ 3 ցեղեր):

ՋԱԼԱԼ ՄԵԾ
ԱԹԱԲԵԿ, ՀՈՎՀԱՆ ԿԹՂԿՍ. ԱՂԲԱՍՏ կամ ՊԱՍՏԱՆ
(1443—71)

ԱՅՏԻՄ ԲԵԿ

. . . . . ԱՐԻՍՏԱԿԵՍ ԿԹՂԿՍ.

ՍԱՐԳԻՍ

ՍԱՅՏՈՒՆ (1457)

ՀԱՏԻՐ ՄԵԼԻՔ (1500)

. . . . ՍԱՐԳԻՍ ԿԹՂԿՍ. (1546)

ՄԵՀՐԱՄ ԲԵԿ

. . . . . ԳՐԻԳՈՐ ԿԹՂԿՍ.

ՋԱԼԱԼ ԲԵԿ (1586)

. . . . . ԱՂԱՋԱՆ ԲԵԿ

ՎԵԼԻՋԱՆ ԲԵԿ

ԲԱՂԴԱՍԱՐ

ՎԵԼԻՋԱՆ Բ.

ՍԱՐԳԻՍ . . . . . . . . . . .ԵՐԵՄԻԱ ԿԹՂԿՍ.

ՄՈՒԼՔԻ ԲԵԿ

ՄԵԼԻՔ ԱԼԼԱՀՎԵՐԴԻ

ՄԵԼԻՔ ԳՐԻԳՈՐ

ՄԵԼԻՔ ԲԵԿ

ԻՍՐԱՅԵԼ ԲԵԿ, ՋԱԼԱԼ ԲԵԿ . . . . . ՍԱՐԳԻՍ ԿԹՂԿՍ., ՀՈՎՀԱՆՆԵՍ
ԿԹՂԿՍ.

ԴԱՆԻԵԼ ԲԵԿ

ԲԱՂԴԱՍԱՐ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ

Նրա կինն էր Մամքանը՝ Բաղաց թագավորի թոռը: Նրա խընդրով և մեծն Վանականի հրամանով ոմն Տեր Իսրայելը՝ Գրիգորի եղբայրը (ըստ իս՝ Եղիան է ճիշտակետ), վկայաբանություն սահմանեց՝ ըստ հայկական և հռոմեական ամիսների, և առաջինը սա է հիշվում ստույգ ժամանակով տոնավեպ՝ մատյանում: Այս Ջալալը, առաջինը ճեղքելով թաթարներից, աստվածային ողորմություն գտավ, և Սարդախ խանը նրան վերադարձրեց Չարաբերդը, Ականան, Կարկառը, որոնք գրավել էին իրենից: Բայց բանսարկու մարդկանց միջոցով նա հանձնվում է Արղուն խանի ձեռքը: Մինչ նրա դուստր Ռուզուքանը՝ ոմն հոր թաթար իշխանի կինը, աշխատում էր փրկել նրան, անօրենները շտապեցին չարաչար մահվամբ սպանել բարյացապարտ մարդուն, 1261 թ.: Եվ նրա որդի Աթաբեկը բերել տվեց նրա նշխարված մարմինը և թաղեց Գանձասարում:

Սրանից սկիզբ է առնում Հասան-Ջալալյանների ցեղը, որոնցից է Ջալալբեկ իշխանը իր երկու եղբորորդիների հետ: Նա 1586 թ. հայոց այլ մելիքների հետ միասին գաղթեց Պարսկաստան, զզվելով օսմանյաններից, որոնք 1579 կամ 1580 թ. թալանեցին ու ավերեցին Խաչենն ու Չարաբերդը:

128. Բայց հզոր և իշխանավոր մարդիկ չպակասեցին Խաչենի տնից և հետագա դարերում. Այունյաց մելիքների հետ միասին մինչև մեր դարը նրանք գրավեցին վիճակների ու գյուղերի վերակացությունը: Լեկերը 1722 թ. արշավեցին Ուտիք և հասան մինչև Խաչենաձոր, ավարի ենթարկելով երկիրը, մեծ վնաս պատճառեցին: Մեկ տարի անց խաչենցիները, միանալով Ուտիքի կողմերի բնակիչների հետ, կանգնեցին օսմանցիների և պարսիկների դեմ: Եվ ԺԸ դարի վերջերին, բռնակալ Փանա խանի օրոք, ինքնագլուխ իշխանությամբ փառավորվում էին Հովսեփ Մելիքը և նրա որդի Բեկլարը՝ զորավոր և կորովի մարդիկ, և նրանց նման Ադամ Մելիքը, որը նրանցից էլ առաջ

անցավ փառքով և հերոսությամբ, և որի մեծաշեն վիմատաշ ապարանքները մինչև օրս կանգուն կան գավառի տարբեր կողմերում: Մելիք Շահնազարը՝ մեծահանճար և քաղաքագետ մի մարդ և ուրիշները՝ Մելիք Ալլավերդին, Մելիք Բաղրամը, Մելիք Եսային, Մելիք Միրզախանը, մնացին պարսից հպատակության տակ: Նրանց սերնդից ոմանք և այժմ պատվի են արժանանում ռուսաց դռանը:

129. Ջալալյանների իշխանության ժամանակ Խաչենի սահմանը ձգվում էր դեպի հարավ, հասնելով մինչև Շուշիի կողմերը, որ մոտ է Գարգար գետին, իսկ ամբողջ երկիրը նրա ու Թարթառի միջև է, որոնց միջով, բարգավաճ հովտով, հոսում է Խաչենագետը, որն իջնում է Գանձասարի և Շահթախտի լեռներից, որոնք գտնվում են Գըրք-կյոզ լեռան վերջում՝ Խաչենի, Ջանգեզուրի, Վայկունիքի միջնասահմանում: Խաչենագետը աջից ընդունում է մի մեծ և մի քանի փոքր վտակներ: Բայց նշանավոր երկրի բնական կերպարանքը, բացի Շուշիի կողմերից և արքունական ճանապարհից, մեզ լավ ծանոթ չէ՝ այստեղով հետաքրքրվող ուղևորների չանցնելու պատճառով:

Արցախի և Ուտիքի այլ գետերի նման Խաչենագետն էլ ձորերով է իջնում, որի հետևանքով էլ այդ մասը **Խաչենաձոր** է կոչվում: Մեր նախնիներից Կիրակոսը հիշում է, թե ինչպես 1240 թ. Խաչենում սարսափելի ու խոշոր կարկուտ է տեղում, որի հետ էլ թզաչափ ձկներ են թափվում, որ «մենք մեր աչքով չտեսանք, ասում է, բայց շատերը կային և հավաստիացնում էին, թե իրենք ականատես են եղել»[54]:

Ըստ հին աշխարհաբաժանման՝ երկրի հյուսիսային կողմը՝ Թարթառի անջրպետը և Խաչենի արևմտյան հովիտը, սեփականացրել էր **Մեծիրանքի** գավառը, արևմտյան կողմը՝

[54] **Կիր. Գանձակեցի**, էջ 321:

**Մյուս Հաբանդը** կամ **Ամարասը**, հարավային կողմը՝ **Պանձ-կանք** գավառը և Ծուշիի այլ գավառներ: Դրանց համաձայն՝ մենք էլ Չրբերդ գավառի մնացած մասը բաժանեցինք երեք մասի, դրանք կոչելով հին գավառների և նրանց նոր բնակավայրերի անուններով՝ Մեծիրանք | և Կսապատ, Ամարաս և Ակերան, Պանծկանք և Ծուշի:

## ՄԵԾԻՐԱՆՔ—ԿՍԱՊԱՏ

130. Արցախի հայտնի գավառներից մեկը **Մեծիրանքը** կամ **Մեծյուրյանքն** է, որն ավելի լավ է կոչել **Մեծարունիք:** Այն մեր առաջին պատմիչները չեն հիշատակում, բացի Աղվանքի պատմիչից, Զ—Թ դարերի մոտակայքում: Սա համարվում է խաչենցիների հին ցեղի օրրանը: Ուներ եպիսկոպոսական հին աթոռ Ս. Հակոբի անվանի վանքում, որի առաջնորդները հիշատակվում են Զ դարից, ինչպես ցույց կտրվի ստորև:

Այս գավառը տարածվում էր Տրտու գետի աջ կողմում, արևմուտքից դեպի արևելք և ձգվում դեպի հյուսիս: Նրա հարավային կողմին մոտիկ հոսում են գետակներ, որոնց ակունքները հայտնի չեն: Դրանցից մեկը, իմ կարծիքով՝ Կսապատի մոտով անցնողը, կոչվում էր **Չղախ,** և պատմիչի նկարագրությամբ նրա սահմանները կոչվում են **«Չղախյան հովիտ,** Ասպարիսան դաշտակ Տրտու գետի ափին, որը գտնվում է Մեծիրանքի կինակում (գավառում)»[55], որտեղ կանգ են առել Մեսրոպի աշակերտները, որոնց թարգրած նշխարքները հայտնաբերվեցին Է դարում: 821 կամ 822 թ. պարտավցիները ասպատակելով Ամարասը՝ եկան այստեղ «և ամրացան Մեծիրանքի գավառում,

---

[55] **Կղնկտ.,** էջ 208:

**Շիկաքար** կոչվող տեղում»[56], որոնց կոտորելով Քաջ Սահլի Սմբատյանը՝ գերի վերցրեց: Երեսուն տարի անց (մոտավորապես 853 թ.) «անձրևների շատությունը Մեծիրանք գավառում տեղատարափի է վերածվում, և հեղեղի ընթացքը հասնում է **Դաստակերտ** գյուղը, որը գտնվում է գետերի միացման տեղում, որտեղից խաշնարածների ութ հարյուր վրան տարավ, որոնք Կովկասից եկել էին ամառային արոտավայր»[57]: Գետերի միացման տեղում կարծեմ Խաչենագետի վտակն է, որը աջից (հարավից) է հոսում:

131. Հյուսիս-արևելքում, Տրտուի ջրբաժանի սկզբում, սույն գավառի և Ծվանշերի սահմաններին մոտիկ, կա երկու գյուղ՝ **Բյու-ղարաբեկ** և **Քյուչյուկ-ղարաբեկ**, այսինքն՝ Մեծ և Փոքր: Փոքրի հարավում է գտնվում աշխարհագիրների նշած **Կապատ** կամ **Քասաքադ** մեծ ավանը՝ հեռվից շրջապատված լեռներով, իսկ մոտիկից՝ այգիներով. այն գեղեցիկ մի վայր է, ինչպես ես կարծում եմ ոռոգվող Չղախ գետով, որը տոթակեզ ամռանը շողում է լեռների շուրջը: Ունի գեղեցկաշեն եկեղեցի՝ բարձրացած չորս սյուների վրա, կառուցված 1686 թ.: Այժմ այդ գավառում դրանից մեծ և բազմաբնակ բնակավայր չկա, որի հետևանքով էլ նրա գլխավոր գյուղն է և, ինչպես կարծում եմ, այդ կողմի տեսուչի նստավայրը:

Սրա հարավային կողմում գտնվում են **Քյոլ-յաղախ** և երկու **Ճան-յաղախ** գյուղերը, արևելքում **Քելանին** է, իսկ արևմտյան կողմում գյուղ չի նշվում: Ըստ աշխարհագծի՝ այդ Քյոլ-յաղախը **Մոխրաքակ** գյուղը պետք է լինի, հիշատակված Ջալալյան Սարգսի կողմից: Այնտեղ կա երկու գեղեցկաշեն եկեղեցի, որոնցից մեկը Տիրամոր անունով է, իսկ մյուսը՝ Իմը-

---

[56] Անդ, էջ 326:

[57] Անդ, էջ 333:

Մատաանց (*), ինչպես նաև Մելիք-Աղամի մի հոյակապ ապարանքը[58]:

132. Այս հովտում և Սսպարիսամձև դաշտակում, որը իր շուրջը գտնվող լեռների շնորհիվ է այդ անունը ստացել, ինչպես վերևում և այլուր ասացինք, մի քանի օրով հանգրվանեցին Մեսրոպի աշակերտները, որոնք եկել էին Մեծկունիքից: Եվ երբ հոնական ասպատակները մտնենում են, աշակերտները այնտեղ թաղում են Երուսաղեմից բերած նշխարքները և մեկնում, բայց չեն կարողանում ազատվել ավազակների ձեռքից, և նրանցից նահատակվածները որպես սրբություն ծածկված են մնում շուրջ 200 տարի, մինչև որ Աստծու այր Իսրայելին տեսիլք երևաց, և նա իր վիճակի եպիսկոպոս Դավթի հետ գալով Մեծիրանքի կողմերի եպիսկոպոս Հովելի մոտ, որի թեմի մեջ էր մտնում Չղախը, սկսեց որոնել երազում տեսածները: Արդ՝ նրանք Մեծիկողմանքի Ըռոսաստակ գավառից Տրոռի վրայով անցնելով Չղախյան հովիտը, «դուրս գալով տեղավորվեցին նշանավոր անտառում, բարձրավանդակ տեղում, մի սարավանդակ վայրում: Այնտեղ կար փայտաշեն մի մատուռ՝ խեցիներով երեսապատված, խաչանիշ զարդաքանդակներով դրվագված, պատերը զարդափայլ գեղեցկությամբ հորինված: Արդ՝ այդ լուրը հայտնի դառնալու ժամանակ անճապարանքով հավաքվեցին պատվական մարդիկ, քորեպիսկոպոսներ, հարյուրների սարկավագներ, գլխավոր գավառապետներ և մեծամեծներ, գործակալներ, տղամարդկանց ու կանանց ժողովրդական բազմություններ, որպեսզի բոլորը մասնակցեն Աստծու սքանչելագործությանը:... Եվ երեքօրյա պասի ժամկետը լրանալիս Արքաուն Իսրայելը բահը ձեռքն առավ, խոնարհվեց բոլորի

---

[58] Հմմտ. Ջալալյանց Սարգիս, Ճանապարհորդութիւն ի Մեծն Հայաստան, հ. Ա, Տփխիս, 1842, էջ 180:

առաջ և, ուղիղ նայելով նկատված տեղը, հրամայեց անհրկյուղ փորել: Եվ այնտեղ մեկտեղ հավաքված բազմաթիվ մարդիկ, մասնակցելով այդ գործին, իրենց զգեստներով կրում էին հողը հեռու: Նրանք աշխատանքից հոգնելով՝ չկարողացան տենչալի ու բաղձալի գանձը գտնել: Ապա այնուհետև արևելյան կողմի փայտաշեն հարկը քանդեցին, ուր դրված էր Տիրոջ մեղսաքավիչ պատարագի սեղանը: Այնտեղ հետախուզելով և որոնելով՝ սեղանի տակ մոտ մեկ կանգուն փորեցին: Հանկարծակի այնտեղից շատ քաղցր ու անուշ բուրմունք տարածվեց: Եվ լցվելով հաճելի առատությամբ՝ շատերի հոտոտելիքները մշտապես քաղցրացրեց: Այդ հոտը ճշգրիտ կերպով նմանվում էր խնկերի ու զանազան ծաղիկների ազնիվ բույրերին, մինչև որ բոլորը առհասարակ զարմացան: Եվ երբ փորեցին տասը թիզ, գտան երկու արծաթյա արկղեր, որոնց վրա դրված էր կապարե կնիք: Վերջինիս վրա հաստահեղույս մեխերով մեխված էր մի ոսկեձույլ տախտակ, և նրա վրա գրված էր ասորերեն և հայերեն...:

Ապա եպիսկոպոսները Իսրայելի և պատվավոր քահանաների հետ միասին առանձնացնում և բաց էին անում սրբության տապանակների մատանու կնիքը ու այնտեղ գտնում Քրիստոսի փրկարար խաչի մի մասը: Նույն ինքը՝ արքիդիական քորեպիսկոպոսը կարդում է ոսկեձույլ տախտակի գրությունը, որը հետևյալն էր, թե՝ «Առանձնացված մասունքները Երուսաղեմի սրբերինն են»: Իսկ Մեծիրանքի հովվապետ տեր Հովելը, երբ տեսնում է այդ աստվածային հրաշքը, իր լայնածավալ գիտությամբ նույնպես բազմաբեղուն կերպով ծաղկում էր և ամբողջ սրտով գոհանում Աստծուց...: Եվ որովհետև իր նահանգում էր գտնվում նախապես սահմանված վայրը, որտեղ ծածկված էր կենսատու լույսը, ուստի չսպասեց որպես նամիփորդ կամ հանցավոր որևէ մեկի կողմից շնորհ ստանալու, այլ ինքը

դարաավ տնօրինող ու հսկող դրանց վրա, իբրև իր գանձերի վրա: Եվ տապանակներից մեկը որպես պատիվ ինքն է առնում և տանում եպիսկոպոսանոցը: Սակայն դրանից խիստ դժգոհ էր Աստծու մարդը..., բայց մի պահ նա թույլ տվեց և իր հեզության համաձայն ոչ ոքի չամբաստանեց, այլ առավ մնացած տապանակները և Դավիթ եպիսկոպոսի հավանությամբ Տիրոջ պաշտամունքը կատարող բազմաթիվ քորեպիսկոպոսներով, քահանաներով, ամբողջ ժողովրդով տարավ իր բնակավայրը և սաղմոսներով, օրհնություններով, լուսվառ լապտերներով ու մոմերով Տիրոջ սրբությունը ուղի գցած իջեցրեց Գլխովանքի սուրբ եկեղեցին»[59]: Եվ ապա այդ դեպքերի մասին գրեցին կաթողիկոսին, իսկ հավելված նամակում ասվում է նաև կնիքով հաստատված կողովների մասին. «վրան հոռոմեական փականքով կապարե կնիք, որից էլ կախված էր ոսկեձույլ մի տախտակ»[60]: Եվ դրանք կաթողիկոսին և Մեծն Զվանշիրին ցույց տալուց հետո Իսրայելը իր մասը տանում է Գլխովանք, իսկ Հովելը իր մասը՝ Ս. Հակոբի վանքը:

133. Ձախից հարավ ընկած է մեկ ձորահովիտ նա՝ Թարթառ և Խաչեն գետերի միջև. դա **Գասպարտն** է կամ **Ղաբարթոն**, որի արևելյան կողմում էլ համանուն գյուղն է, իսկ արևմտյան կողմում՝ **Գազանքը** և **Քելանին**: Խաչենագետի հովտում, վիճակի հարավարևելյան ծայրում, գետի աջ կողմում, մի բարձրավանդակի վրա գտնվում է **Բարոխ** գյուղը, իսկ նրա հարավում՝ **Տաշ-պաշը**, դրանից ավելի վերև, արևմտյան կողմում՝ **Ծայվան**, սրա հյուսիս-արևմուտքում, գետի ձախ կողմում **Ախմաք** գյուղը. սրա և վերոհիշյալի միջև գետերի միացման տեղն է, և այնտեղ, նրա անկյուններից մեկում կարելի է հան-

---

[59] Նույնը., էջ 205—208:

[60] Նույն, էջ 210:

դիպել **Դաստակերտ** գյուղին, որ հեղեղվեց հազար տարի առաջ: Հասան-Ջալալյանը Արցախի արձանագրությունների ժողովածուներում այդ գյուղը կոչում է **Տաստակեր**, որտեղի եկեղեցում էլ ընդօրինակված է մի արձանագրություն, ըստ որի այն կառուցվել է Սարգիս եպիսկոպոսի կողմից, 1281 թ. «Չլ թվին Աստծու կամքով, Արղունի իշխանությամբ տեր Ստեփաննոսի հայրապետության ժամանակ, Փախրատինի որդիներ Իվանի և Սատրատինի ամիրայության օրոք, ես՝ Տեր Սարգիսս, կառուցեցի ժամատունը, զուգեցի գավազանները, ավետարանները, Ստողոգինը, Եսային: Ովքեր աղոթում են, թող ողորմությամբ հիշեն հանուն Քրիստոսի»:

Ախմաքի հյուսիս-արևելքից նրան մոտ է գտնվում **Պալլագալա** գյուղը, իսկ հյուսիս-արևմուտքից նույնպես նրան մոտիկ՝ **Տավշանլը**, որը հայոց աղբյուրներում **Առաջաձոր** է, հիշատակարաններում՝ **Առջաձոր**, բայց ըստ իս ավելի ճիշտը **Արջաձորըն** է: Խաչեն գետի ձախ կողմում, Գանձասարի ելքից չորս մղոն հեռու, ապառաժոտ ու մացառոտ ձորավայրում, հայկական 100 տներով գյուղն է, որտեղ կա քարաշեն եկեղեցի, կառուցված կամ նորոգված 1668 թ. Դավիթ քահանայի կողմից, որի օրոք գյուղի ավագն էր Յաղուբ բեկը, իսկ Ագառգալլինը՝ Պահարը: Բայց եկեղեցու դռան վրա ամրացված է 1253 թվի մի խաչվեմ. «ՉԲ թվին ես՝ Աբուսայի որդի Վաչես, խաչ կանգնեցըրի պարոն Թուրքին. ովքեր կկարդան, թող հիշեն հանուն Քրիստոսի»:

Արջաձորի մերձավոր վայրերը հիշատակվում են կանոնների մեջ, 1458 թ., որոնցում հիշվում են նաև Մերաթի որդի Շահնշահը, Արղութի թոռը և Ջալալ Մեծի որդու, Մեջլիսի որդու, Ուլուբեկի Աղաքաստ տան **Արաքա-հողը** (ուր սպանություն էր կատարվել), իսկ սահմանները կոչվում են **Առաջաձորի ջուր**, **Մեծ Շահառ**, **Դիցարած քարեր**, **Արապա ճորեր**,

**Տով**, Արխե աղբյուրի հող, **Հավավի խոռ**, **Որոյաց խաչի խոռ**, **Քարոտն**, **Քարի չրաղաց** **Խաչեն** գետի վրա. այս հանգամանքներին վկա են եղել Աղվանքի Հովհաննես կաթողիկոսը, Գանձասարի առաջնորդ Եղիա եպիսկոպոսը, Ջալալի որդի Աղաբաստը (որը այդ կողմերի ազնվագույն տանուտերերից է), Աթաբեկ Ամիր Հասանը, նրա եղբայրները և Դուրսունի որդի Միրղազին:

Արջաձորի հյուսիս-արևելքում բարձրանում է **Չիլեթ** լեռը, որը հայերը կոչում են **Չափարած խաչ**՝ նրանում գտնվող մի ցանկապատ խաչվեմի պատճառով, և այնտեղով է անցնում ճանապարհը դեպի հյուսիս:

Գետակի աղբյուրների տեղերում գտնվում են **Սալտարան**, **Խորխան**, **Հազարգոխ** (*), **Հնձախոտ** կամ **Հնձախութ** հանգըրվանները կամ ձմեռանոցները ու ագարակները, որտեղ գըտնըվում էին նաև Գանձասարի վանքի կալվածքները, որոնց մոտ կան եկեղեցիների ավերակներ կամ լքված մատուռներ, խաչարձաններ և գերեզմաններ, որոնցից մեկն էլ բլրի գագաթին գտնվող **Կարմիր եկեղեցի** կոչվածն է, որը դեռևս կանգուն է: Նրա մոտ կան կարմրաքար խաչվեմեր, որոնց արձանագրությունները ճշգրտված չեն: Գայլարտի կոչվող աղբյուրների վայրի և սարահարթից հոսող Թարթառի միջև ընկած է **Հընձախոտ** բուն գյուղը, որը այլազգիների կողմից **Յայճի** է կոչվում:

Հնձախոտ ձմեռանոցի սկզբից, մեկ մղոն հեռավորությամբ գտնվում են **Աղբերքհան** ձմեռոցն ու գոմերը, Այն ռամիկները կոչում են **Ըխպըրքան** կամ **Խըբըրքան**, որտեղ գտնվում է Սկյանդար (*) նահատակի մի ուխտատեղ-եկեղեցին, ուր զատկի օրերին տոն և հանդիսություններ են կատարվում: Նրա կարմրաքար սյուների ու դռան վրա և գերեզմաններում երևում են արձանագրություններ, որոնք դեռևս չեն վերծանված: Հըն-

ձախրուի հյուսիսային կողմում, մի լեռնաբլրի լանջերին կա **Բեփզոմեր** (ռամիկների արտահայտությամբ՝ **Պեմեն-կյումեր**) կոչվածը։ Լեկերի և պարսիկների ասպատակություններից այդ տեղերը ամայացան ԺԸ դարի երկրորդ կեսին, իսկ այժմ պատկանում են Արջաձորին։ Սահմանները անտառախիտ են, որտեղ կան երկանաքարի և կարմիր ջրաղացքարի լքված քարահանքեր։

134. Խաչենագետի և նրա վտակ Քոլատակի միջև, երկուսից մեկ մղոնաչափ հեռավորությամբ գտնվում է Մեծիրանքի հնագույն, նշանավոր ու հայտնի Ս. Հակոբի մենաստանը, որը կոչվում է նաև **Մեծիրանքի վանք**՝ կառուցված բարձր բլուրի վրա։ Գըրք-կյոլ լեռան արևելքում անտաշ քարերով կառուցված երեք եկեղեցի կա։ Նրանց առջևի մասում գավիթն է, իսկ շուրջը՝ վանքի մութ սենյակները։ Իսկ մյուս արձանագրություններից, ասում է Սարգիս Ջալալյանը, կարելի է գուշակել, որ մենաստանը կառուցվել է ՁԳ թվին, որը Տիրոջ 634 թիվն է, բայց հարկ է կարծել, որ այն ավելի վաղ է հիմնադրվել, քանի որ այնտեղ էր տեղադրված Մեծիրանքի եպիսկոպոսի աթոռը, և առաջին եպիսկոպոսը հիշատակվում է Տեր Աբասը, Զ դարի կեսին, որը և 552 թ. Աղվանից Տան կաթողիկոսություն վերակոչվեց։ Այդ դարի վերջում եպիսկոպոսը Սիմեոնն էր, որին հիշում է Աբրահամ կաթողիկոսը իր թղթում[61], իսկ Է դարի կեսին՝ Հովել եպիսկոպոսը, որի ժամանակ Չղախյան հովտում տեղի ունեցավ մասունքների գյուտը, և կողովներից մեկը բերվեց այստեղ։ Նրանից հետո հիշվում է Զաքարիան, որին ձեռնադրեց Ներսես կաթողիկոսը, Է դարի վերջում կամ Ը-ի սկզբում։ ԺԳ դարի կեսին Սարգիսն ու Վարդանը առաջնորդ կարգվեցին, իսկ շատ դարեր անց հիշվում է Գրիգոր եպիսկո-

---

[61] **Կղնկտ.**, էջ 276—279։

պոսը, որի հիշատակը գրված է Մծբինի Ս. Հակոբ եկեղեցու արծաթյա պահարանի վրա. «Նորոգվեց ՌՃԽ (1691) թվին Գրիգոր եպիսկոպոսի ձեռքով»: Քանի որ այդ սրբին է նվիրված, դրա համար էլ առանձին արձանագրություններում (օրինակ, Գանձասարի արձանագրությունը) կոչվում է Մծբինի աթոռ: Այժմյան եկեղեցին կառուցվել է Խորիշահ տիկնոջ կողմից, 1212 թ., որի որդիները՝ մեծն Ջալալ-դոլն ու Զաքարեն և վերին Խաչենի իշխանները, նրանց հետ նաև ուրիշները, վանքին նվիրել են գյուղեր և ագարակներ, ինչպես ցույց կտրվի այլ արձանագրություններում, որոնց մեջ վերջին թվականն է 1293-ը: Բայց կան նաև անթվակիր արձանագրություններ, ինչպես պայազատ իշխան Ջալալի որդի Հովհաննես կաթողիկոսի խաչարձանը: Թվում է, որ մյուս խաչվեմը նա է կանգնեցրել վանքի գավիթում և մակագրել՝ «Ես Հովհաննես կաթողիկոսս, կանգնեցրի այս խաչը իմ հոգու փրկության համար»: Այնտեղ է գտնվում նաև նրա գերեզմանը՝ «Այս է Աղվանքի կաթողիկոս Տեր Հովհաննեսի գերեզմանը. ՋԺԹ», որից հայտնի է դառնում նրա վախճանվելու թվականը՝ 1470:

135. Մեծիրանքի վանքի արձանագրությունները.

Ա. «ՌԿԱ թվին Աստծու կամքով ես՝ Վախտանգի տիկին, մեծն Սարգսի դուստր, Զաքարիայի և Իվանեի քույր Խորիշահս, վերստին կառուցեցի Մեծիրանքի եկեղեցին՝ իմ հոգու փրկության և իմ զավակների բարեխոսության համար. Ակ (իմա՛ մի քառասուն) ժամերգություն թող լինի ինձ և իմ ծնողների համար: Վախտանգին և ինձ ձեր աղոթքների մեջ հիշեցե՛ք»:

Բ. «ՉԽԲ թվին ես՝ Հեջուբի եղբորորդի Մավիս, դարձա սուրբ ուխտի միաբան, գնեցի Խաչեղիքի սուրբ նշանը և տվեցի վանքին: Իմ տերը և միաբանները խոստացան սրա դիմաց ժամերգություն կատարել»:

Գ. «Ջալալի հրամանով ես՝ Վահրամս, Հասանը, Սմբատի որդիները մեր հոր հոգու համար Ծաղատեղի հողը տվեցինք Մծբինի աթոռին: Տեր Վարդանը և միաբաններս Հասանի, Սմբատի, Թամարի համար ժամերգություն տվեցինք. ով հողը խլի և ժամերգությունը խափանի, ՅԺԸ (318) հայրապետների կողմից թող նզովվի»:

Դ. «ՈՂ թվին ես՝ Մեծիրանքի տան Սմբատի որդի Գրիգորս, Տեր Սարգսի ու Տեր Վարդանի առաջնորդությամբ սուրբ նշան ավետարանը և Ակեսավերը իր հողով ու իշխանությամբ տվեցի Ջալալին ու միաբաններին»:

Ե. «Աստծու կամքով ես՝ Տեր Հովհաննես կաթողիկոսս, մեծ իշխան Ջալալի որդիս, կանգնեցրի խաչը իմ հոգու փրկության համար. ովքեր երկրպագում են, թող հիշեն աղոթքների մեջ»:

Զ. «Աստծու կամքով մենք՝ Սարգսի որդիներ Ուքանս և Պապքանս, որդու հոգով (՜), Ջալալ-դոլի իշխանությամբ, ընծաներով միաբանվեցինք սուրբ նշանին. Տէր Վարդանը և միաբանները տվեցին տասը ժամերգություն. ով խափանի, թող դատապարտվի Աստծու կողմից»:

Է. «ՉԱ թվին թագավոր Ջալալ-դոլի հրամանով ես՝ Հեչուբի որդի Սմբատս, Էգատեղը տվեցի Գրիգորին. նրանք թող ժամերգություն կատարեն»:

Ը. «Ես՝ Խաչենի տեր Վախտանգի որդի Զաքարես, Կոռի երկիրը տվեցի Մեծիրանքի սուրբ նշանին, և սրանք Վարդավառի տոնի ժամանակ ժամերգություն տվեցին ինձ և իմ տիկին Արզու Խաթունի համար. ով խափանի ժամերգությունը, թող դատապարտվի Աստծու կողմից»:

Սակայն անգամ հիշատակվելու պատճառով անծանոթ են սրանց տեղերը, այն է՝ **Ծաղատեղը, Ակեսավիրը, Կոռի երկիրը,** թերևս դա նույն Բոռի Հանդ կոչվածն է, Քոլատակի արձանագրությունում նշվածը:

136. Հյուսիս-արևելքի վանքերից կես մղոնից մի փոքր ավելի հեռու է գտնվում **Տամկալե** կամ **Տամողլի** գյուղը, իսկ հարավի վանքերից մեկ մղոն հեռու՝ **Քոլատակ** գյուղը: Այս կամ սրան մերձավոր անունով բնակավայրեր շատ տեղերում ու կողմերում են նշվում, որոնք աշխարհագրագետները գրում են **Քյոլաղաք** կամ **Քյոլաղակս** ձևերով: Ինձ թվում է, որ նշված են տեղի հանգամանքները, այսպես՝ ագարակի, գերեզմանոցի և այլնի տեղերը. օրինակի համար Դադիվանքի արձանագրության մեջ՝ «Դադի վանքը իր Քոլատակով»: Այնտեղ կան գերեզմաններ, մահարձաններ, և մի խաչարձանի վրա գրված է 1243՝ «Ի ՈՂԲ թվին Աստծու, Խաչենի տերերի, Ջալալի և իր որդի Աթաբեգի ողորմությամբ ինձ՝ Հուսաբեցի վարդապետ տեր Վարդանիս, իշխանները տվեցին հողը, իսկ ես գնեցի **Բոռի հանդը, Ճեղջատափը**, երկրի տնատեղը և Գանձասարի վանքին նվեր տվեցի իմ հոգու համար: Սրանք Վարդանանց տոնի ժամանակ տարին երկու ժամերգություն տվեցին: Ով հայրենիքը գրկի սուրբ ուխտից, թող նզովվի ՅԺԸ (318) հայրապետների կողմից և իմ մեղքերին պարտական լինի»:

Գերեզմանոցում, մի մահարձանի վրա հականե-հանդվանե հիշատակվում են Ջալալյան երկու պայազատներ, այսպես՝ «Այս է Մեհրաբ Աղայի տապանը». և նրա մոտ՝ «Ես Մեսրոպ Բեգի որդի Ջալալ Բեգս, կանգնեցրի իմ հոգու տապանը (հիշատակը). աղոթքների մեջ հիշեցե՛ք մեզ»:

137. Ս. Հակոբի վանքի դիմաց և նրան մոտիկ (կարծեմ հյուսիսային կողմից) մի բարձրակատար և անմատույց ժայռի վրա գտնվում է **Հավախաղաց** կամ **Հավքախաղաց** բերդը, որն անունն ստացել է իր դիրքի պատճառով: Այն այլազգիները մինչև օրս կոչում են **Սաղսաղան-քալեսի**, այսինքն՝ կաչաղակի անունով: Թվում է, որ բերդը հնում էլ այդպես է կոչվել և թերևս այդ անունից ու տեղից էլ ստացել իր **կաչեղյաց խաչ** անունը,

որը հիշատակվում է Մեծիրանքի արձանագրություններում։ Սույն բերդը կառուցել է Սահլյան Առբներսեհի որդի Գրիգորը, Թ դարի երկրորդ կեսին, որին ԺԲ դարում տիրում էին Վախտանգյանները։ Իսկ թաթարների հարձակման ժամանակ, 1236—38 թթ., եղել է Ջալալի իշխանության տակ։ Այն այլ բերդերի հետ միասին ամուր պաշտպանված էր, քանի որ փախստականներից «շատերը ամրացել էին այն ապահով վայրերում, որոնք տեղի դժվարության պատճառով Հավախաղաց էին կոչվում, և մարդիկ ապահով կերպով ապաստանում էին այդ ամրոցներում։ Բայց քանզի Տերը երես թեքեց մարդկանցից, թշնամիները հանկարծակի խուժեցին ամրոցները և մարդկանց մի մասին սրի քաշեցին, իսկ մի մասին էլ գահավեժ արեցին։ Ընկածների շատությունից գետինը ծածկվում է, և արյունը, առու կազմելով, հոսում էր իբրև ջուր։ Ոչ ոքի չխնայեցին, և երկար ժամանակ նրանց ոսկորները երևում էին իբրև քարակույտեր»։ Ցարդ երևում են ամրոցի, հին բնակարանների մնացորդները և լճաձև մի մեծ ջրավազան։

138. Սրանից հյուսիսային կողմում, Խաչեն գետի ձախ կողմում, կան նշանավոր այլ բնակավայրեր, ինչպես՝ Տամկալեի հյուսիսում, Արջանորից մեկ մղոն դեպի արևմուտք գտնվում է **Պազարքենդ** գյուղը, որը հայերն անվանում են **Վաճառ** գյուղ։ Իսկ տեր Հասան Ջալալյանը արձանագրություններում վերնագրել է **Տմակահող**։ Այդ արձանագրությունները մեզ տեղեկություններ են տալիս մեծն Հասան-Ջալալդոլի իշխանության օրերի մասին՝ ծանուցելով այնտեղ գտնվող սուրբ Ստեփաննոսի մասունքների և 1229 թ. նրա կառուցած եկեղեցու մասին։ Այնտեղ կարդում ենք. «Աստծու շնորհիվ ես՝ Վախտանգի և Խորիշահի որդի, Խաչենի տեր Հասանս, կառուցեցի այս սուրբ եկեղեցին, երբ սուրբ Ստեփաննոսի մասունքները հայտնվեցին այս տեղում ՈՀԸ (1229) թ.։ Ջատկին ժամերգություն սահմա-

նեցի ինձ և իմ հոր համար»։ Մասունքները թերևս է դարում Ցղերկքից բերածները լինեն, որոնք մենք վերագրեցինք Վայկունիքին, որովհետև այդ տեղը Վայկունիք գետից 4 կամ 5 փարսախ հեռու է գտնվում. այն Տուղիսն է։

Կարճ ժամանակ անց, այն է՝ 1251 թ. Ջալալի տիկին Մամքանը կառուցել է մի այլ փոքր եկեղեցի, որի արձանագրությունն է. «Ես՝ Ջալալ-դոլի տիկին, Սյունյաց Բաղուց թագավորի թոռ Մամքան թագուհիս, կառուցեցի եկեղեցիները և իմ Այրընձա հողը ընծա տվեցի իմ հոգու համար. սպասավորները թող ինձ համար երկու պատարագ կատարեն, իսկ ծննդյան ութ օրերը՝ իմ ծնողների համար մինչև իմ մեռնելը։ Ով իմ տվածը խլի կամ ժամերգությունը խափանի, թող դատապարտվի Աստծու և սրբերի կողմից. Չ թվին»։

Եկեղեցու գավիթում կանգնեցված են խաչվեմեր, որոնցից Սպիտակ կոչված մեծ խաչի վրա 1507 թ. Վելիճանը արձանագրել է. «ՋԾՁ թվին Աստծու կամքով ես՝ մեծն Աղբաստի թոռ, պարոն Սայտունի որդի Պելիճանս, կանգնեցրի այս խաչը»։ Մի այլ փոքր խաչի վրա գրված է. «Աստծով կամքով ես Գրիգոր կաթողիկոսս, կանգնեցրի այս սուրբ խաչը իմ հոգու փրկության համար. անվանակոչման օրը կանգնեցրի սուրբ խաչը պարոն Մեյրաբի փրկության համար, Հայոց ՌԺԲ թվին»։

139. Վանառից երկու մղոն դեպի արևմուտք. մոտավորապես գետի մեջտեղում նշվում են **Սյումաքալ** վանքն ու գյուղը։ Եթե ճշմարիտ լինի գրածը, ապա Գանձասարին մոտիկ ու կից քարաժայռ ու անառիկ բլրի գագաթին պահպանվել են **Խոյախան** կամ **Խավախան** բերդի ավերակները։ Մեր նախնիները այն գրում են նաև **Խավխան** և **Խոխանաբերդ** ձևերով, որոնք վերցված են պարսկերենից, ինչպես գրում է Կիրակոս Գանձա-

կեցին[62]: Ինձ թվում է, որ այն ծագում է **խեհան** բառից, որ նշանակում է **փափագող**, որպես թե տենչալի: Սա անշուշտ **Խաչենի բերդն** է, անվանի տոհմի բնիկ նստավայրը, որովհետև գրքերում, արձանագրություններում, իշխանների հիշատակարաններում այն նշվում է Խոյախան կամ Խաչենի բերդ ձևերով, միայն թե բոլոր տեղերում ոչ միատեսակ: Ուրեմն հայտնի է, որ այն երկրամասի անունով Խաչենի բերդ է կոչվում կամ էլ Խավխան հատուկ անվամբ: Եվ քանի որ պարսկերեն այդպես էր անվանվում, ուրեմն այստեղից էլ կարելի է ենթադրել բերդի հնության մասին: Բացի դրանից, այն այդպես էր անվանվում նաև Միհրական տոհմի կողմից: Իսկ իշխանության սկզբնավորումը պետք է ընդունել Առանից:

Պատմիչների կողմից Խաչենի բերդը առաջին անգամ հիշատակվում է Թ դարից, երբ՝ Դադոյի վանքի խորանձորում իր ազգականների կողմից սպանվեց Ստեփանոս Միհրականը. «սպանվածի կինը այդ աղետներից զինվում է առնական քաջությամբ, վերցնում է իր ողջ մնացած դուստր Սպրամին և գիշերային տաժանելի ուղևորությամբ (դժվարին լեռներով գնալով) մտնում է Խաչենի բերդը: Իր տան մասին բարիք խորհելով՝ Սպրամին ամուսնացնում է Սահլի որդի Ատրներսեհի հետ...: Այս Ատրներսեհը շինում է Հանդու բերդը»[63]: Դրանից հետո այդ արձանագրության մեջ, Դադի վանքում կարդում ենք. «Հաթերքի, Հանդաբերդի, Խաչենաբերդի և Հավախաղացի տերը»: Իսկ Խավախան անունը հիշվում է մի փոքր ավելի առաջ, նույն Հասանի ժամանակ, ԺԲ դարի կեսին: Նրա տերը կոչվում էր Վասակի որդի Գրիգոր, որը համարվում է Հասանի հորեղբորորդին: Սա գնաց Ճառաբերդի տեր իր փեսա Տողանի

---

[62] Հմմտ. **Կիր. Գանձակեցի, էջ 269**.

[63] **Նույնը**, էջ **340**:

մոտ, «որպեսզի նրա միջոցով վրեժ լուծի Դեսրումի որդի Հասանից՝ իր եղբայր Սմբատի համար, որին սպանել էր նա պատերազմի պատճառով: Նրանք միմյանց նկատմամբ ունեին անմիտ թշնամանք և այդ պատճառով իրենց դուստրերին կնության էին տալիս այլազգիներին: Եվ այդ պատճառով էլ Գրիգորը համարձակվեց գալ իր փեսա Տողանի մոտ»[64], և նրա հետ կովելով մի թուրքմենի դեմ, Դիվախոռ լեռան մոտ, պարտվեցին: «Տողանն սպանվեց, սպանեցին նաև Գրիգորին, իսկ նրա հետ էլ այլ ազատների: Եվ չնայած նրանց թաղեցին այնտեղ, քրիստոնյաների գավառում, բայց մի տարի անց վերցրին, բերին Գանձասար կոչված վանքը, որը նրա նախնիների տապանատունն էր, և նրան այնտեղ թաղեցին»[65]:

Գոշ վարդապետի այս խոսքերը մեզ հնարավորություն են տալիս ըմբռնելու խաչենցիների տոհմի՝ երկու մասի բաժանվելու պատճառները:

ԺԳ դարի կեսին այս բերդում էր նստում բազմիցս հիշատակված Ջալալ Հասանը, որը Դեսրումյան ցեղից էր. «այս իմաստուն մարդը, երբ տեսավ անօրենների հարձակումը, իր աշխարհի բնակիչներին ամրացրեց այն բերդում, որ կոչվում է Խոխանաբերդ՝ ըստ պարսից լեզվի: Երբ եկան նրան պաշարելու, տեսան, որ հնարավորություն չկա գրավելու բերդը. սիրով և խաղաղությամբ նրան կանչում են իրենց մոտ. նա իմաստուն կերպով ընդունում է նրանց առաջարկը և շատ նվերներով գնում նրանց մոտ, նրան մեծ պատվի են արժանացնում ու իր աշխարհը տալիս իրեն»[66]: Եվ տասը (կամ ավելի կամ պակաս) տարի անց անգութ Բուղա Ղանը, գրգռվելով անզգամ-

---

[64] Միխիթար Գոշից կատարած մեջբերումը հմմտ. նշնկտ., էջ 354:

[65] Նշնկտ., էջ 354—355:

[66] Կիր. Գանձակեցի, էջ 269:

ների կողմից, թաթարների դուռը բռնեց իշխանին, քանդեց Խոյախանը, նրա հետ նաև **«Դեղը, Միրանաքարը** և այլ ամրոցներ ու դրանք այնպես հավասարեցրեց գետնին, որ մինչև անգամ հետք չի երևում, թե երբևիցե բնակավայր է եղել»[67]։ Սակայն մինչև օրս երևում են ավերակները, թերևս բերդերը դրանից ավելի չէին, քան կարելի է գուշակել պատմիչի խոսքերից։ Նրանից ներքև գտնվում է երբեմն բազմաբնակ ավանի ավերակ, որտեղ գտնվում էին նաև Ջալալի ապարանքը և **Դարպասներ** կոչված եկեղեցին, որոնք մինչև օրս երևում են։ Դրանից ոչ հեռու, Խաչենի գետի աջ կողմում, գտնվում է Թարխանի բերդը։ Այսպիսով, վերոգրյալ երկու բերդերից մեկն էլ Միրանաքարն է, հենց նույն **Ծիկաքարը**, որը գրավվել էր պարտավցիների կողմից ավելի վաղ ժամանակներում։

140. Ամբողջ Հայոց Աղվանքում ու Առանում վերոհիշյալ բերդերից ու գյուղից մեկ մղոն դեպի արևմուտք, Խաչենի գետափին, գտնվում է հռչակավոր ու նշանավոր **Գանձասար** գյուղը, որն ընկած է Գանձասար լեռան հարավային լանջին, որի անունով էլ կոչվում են գյուղն ու վանքը։ Այն Աղվանից տան հետագա դարերի կաթողիկոսարանն էր։ Հայտնի չէ այդ հռչակավոր վանքի կառուցման ժամանակը, որը աշխարհացույցում ևս Աղվանքում է նշված։ Բայց այն ավելի շուտ է եղել, քան Ջալալ-դոլի ժամանակը։ Վերջինս ոմանց կարծիքով նրա կառուցողն է համարվում, քանզի հիշատակվում է Գոշի կողմից, ինչպես որ վերևում նշվեց՝[68] ԺԲ դարի կեսին։ Եվս երկու դար առաջ, Ժ դարի կեսին, այն հիշվում է Սյունյաց պատմիչի կողմից Անանիա կաթողիկոսի Գանձասարի եկեղեցի գալու առ-

---

[67] Անդ, էջ 313։

[68] Կղնկտ., էջ 354—355։

թիվ[60]: Եվ որովհետև այն Ջալալի նախնիների գերեզմանատունն էր, և նրա հայրը կտակով պատվիրել էր նրան՝ եկեղեցի շինել գերեզմանի վրա, և ինքը Ջալալ-դոլը, կամեցավ պայծառացնել վանքը, այդ տեղը նորոգեց և մի հոյակապ եկեղեցի շինեց 1226—1238 թթ., որպես և ինքը արձանագրում է ճոխ ու գեղեցիկ խոսքերով, որը ցույց կտրվի արձանագրության մեջ:

Եկեղեցու շինարարությունը սիրով հիշում է նաև ժամանակակից պատմիչ Կիրակոսը. «Շինեց գեղեցկազարդ կառուցվածքով մի եկեղեցի, Աստծու փառքի գմբեթարդ ու երկնանման մի տաճար... Գանձասար վանքում, Խոխանի բերդի դիմաց, իրենց շիրիմի տեղում: Շատ տարիներ աշխատեցին նրա վրա, և երբ շինարարությունն ավարտվեց, մեծահանդես նավակատիկ (տոն) կատարեց եկեղեցին կառուցելու համար: Այնտեղ էր Աղվանքի կաթողիկոս Տեր Ներսեսը բազում եպիսկոպոսների հետ, ինչպես նաև Վանական վարդապետը շատ վարդապետների հետ միասին: Այնտեղ էին նաև Խաչենի սուրբ վարդապետներ, միմյանց հարազատ Գրիգորիսը և Տեր Եղիան... բազում քահանաների հետ: Եվ՝ ասում էին, թե քահանաների թիվը ՉԾ (700) էր: Նա երբ կնքվեց օծմամբ, մեծ ճաշկերույթ կազմակերպեց, և ինքն իր իսկ ձեռքերով պատիվ էր տալիս բազմականներին: Եվ յուրաքանչյուրին, ըստ իր պատվի, առատ նվերներ տալով՝ արձակում էր: Այս դեպքը տեղի է ունեցել Հայոց ՈՁԹ թվին, Վարդավառի մեծ տոնի օրը: Նրա տիկին Մամքանը եկեղեցու դռանը շինեց մի հրաշալի գավիթ, իսկ ինքը ամբողջ կյանքում ապրելով առաքինաբար, ամեն օր ճգնում էր | պաս պահելով ու աղոթքներով և ընթերցանությամբ գիշեր ու ցերեկ մտածում էր կատարել Տիրոջ պատվիրանները՝ ըստ Սուրբ

---

[60] Հմմտ. Ստ. Օրբելյան, Պատմություն նահանգին Սիսական, հ. Բ, Փարիզ, 1859, էջ 22:

Գրքի»[70]։ Այս տաճարը... երկարությամբ ու լայնությամբ և գավիթը նորոգվել են ԺԷ դարի կեսին, կանգուն ու լուսավոր են՝ ըստ նկարագրված քանդակների ու պատկերների զարդարանքի։ Բեմի ճակատին արձանագրված է հետևյալ կարճ խոսքը. «Ովքեր կերկրպագեն աստվածազարդ այս սուրբ սեղանին, աղաչում եմ՝ Վախտանգի որդի Հասանին հիշեցե՛ք ձեր սուրբ աղոթքներում»։ Եկեղեցու մյուս արձանագիրը թերևս ակնարկում է Մամքանի այն շինարարության մասին, որ կատարվել է հարավային կողմում, 1256 թվին։

141. Սրանցից զատ, հարկ է ենթադրել, որ տուրիշ եկեղեցի էլ եղած լինի, որի դեպքերը պատմվում են Ս. Կարապետի գլխի բերման հիշատակարանում։ Գլուխը | Կոստանդնուպոլսում երբ կամեցան ֆրանկներից հափշտակել, այն ստացող իշխանը «առնելով փախցրեց հյուսիսի կողմը, Վրաստան, որն այնտեղ ընկավ Արցախի տեր Ջալալ-դոլի եղբոր ձեռքը։ Յոթ հարյուր թվին Ջալալ-դոլը գնաց եղբոր մոտ և խնդրեց սուրբ գլուխը, բայց նա չհամաձայնեց հոժարությամբ տալ։ Իսկ սա բռնի կերպով հափշտակեց եղբորից, բերեց Գանձակի կողմերը, Արցախի գավառը և ամփոփելով իր հայրենի գերեզմանատան շիրիմում՝ վրան շինեց զարմանաշեն ու հրաշալի կաթողիկե եկեղեցի՝ ի փառս Քրիստոս Աստծու ու սուրբ Հովհաննես Մկրտչի։ Նավակատիկի անվանակոչության օրը բարձր ձայնով կանչեց՝ **Գանձասարի Սուրբ Հովհաննես**։ Բացի դրանից, այնտեղ են զետեղված Լուսավորչի օրենսուսույց սուրբ ծնոտը, նրա թոռ սուրբ Գրիգորիսի աջը, Հովհաննեսի հոր սուրբ Զաքարիայի արյունը, մեծ մարտիրոս սուրբ Պանդալյոնի և շատ այլ սրբե-

[70] **Կիր. Գանձակեցի**, էջ **269—270**։

րի մասունքները, որոնց միջոցով շատերը բուժվում են ի փառս մեր Քրիստոս Աստծու»[71]:

Մեծ եկեղեցու կառուցումից տասներկու տարի անց Ջալալը մարտիրոսաբար տանջամահ եղավ Գաղու քաղաքում անգութ Արղուն Ղանի կողմից: Նրա մարմինը գցվեց մի ցամաք ջրհորի մեջ: Այն պատվեց լույսով, հետո գողացվեց իր որդի Աթաբեգի ջանքերով և բերվեց ու թաղվեց այստեղ, «Գանձասար վանքում, իր հայրերի գերեզմանոցում»[72]: Եվ շիրիմի վրա արձանագրված է. «Մեծ իշխան Ջալալը, կատարելով ծնողի կտակը, հիմնադրեց այս հոյակապ ու քարաշեն եկեղեցին Հայոց թվականության ՈԿԵ թվին և գոտևորելով զանազան շինություններով՝ ավարտեց ՈՋԷ թվին՝ իր՝ Ջալալ-դոլի ու իր տիկին Մամքանի հոժար կամքով»:

142. Հայրենի իշխանության բարեպաշտ ժառանգ Աթաբեգը օժանդակեց վանքի զարգացմանը. նրա հրամանով իր հորեղբորորդի ու առաջնորդ Հովհաննեսը 1271 թ. ավելացրեց կալվածքները: Նրա քույր, պարոն Ումեկի տիկին Մամախաթունը 1280 թ. ուխտի եկավ այստեղ: Դրանից ավելի առաջ, 1268 թ., Ումեկի հայր Ծարը և մայր Մամախաթունը վանքի միաբաններ էին դարձել: Ամարասի եպիսկոպոս Տեր Ներսեսը միաբան էր գրվել 1282 թ., Սասնա Հանդաբերդցին՝ 1271 թ. և ուրիշներ: Նմանապես նաև նրա պայազատները ու Աղվանքի կաթողիկոսները վանքը բարենորոգեցին ու պահեցին մինչև ԺՁ դարի կեսը: Դրանից հետո այդ տեղը մեկ դար դառնում է անշուք մի վայր, և այդ պատճառով էլ ընդհատվում են արձանագրությունները: Այդ դարից հետո, 1657 թ. Թալիշի մելիք Հովսեփի որդի Աբովը նորոգել է Գանձասարի երկու եկեղեցիների տա-

---

[71] Նղնկտ., էջ 349—350:

[72] Միխիթար Գոշ, հմմտ. Նղնկտ., էջ 355:

նիքը և քանդված պատերը: Եվ այդ տեղը մեծ պատվի արժանացավ՝ այնտեղ վերոհիշյալ սրբերի մասունքները զետեղելու շնորհիվ: Եվստաթեոսի աշակերտը՝ Ս. Թադեոսի և Ս. Լուսավորչի մասունքները բերել էր Հունաստանից: Լուսավորչի թոռ Գրիգորիսը մի մասը տարել էր և պահել Ճիղբք աշխարհի Ցոփ քաղաքում: Նրա նահատակությունից հետո մասունքները պահվեցին Հակա գյուղում: Դրանք հայտնաբերվելով Վաչագանի օրերում՝ բերվեցին Ամարաս, միացվեցին մյուս մասին. այդ տեղափոխության մասին վկայում է պատմիչը[73]:

143. Այդ տեղի համբավը է՛լ ավելի բարձրացավ Աղվանքի կաթողիկոսների նստավայր լինելու շնորհիվ: Աթոռը այդտեղ տեղափոխվեց Պարտավից, ինչպես կարծում եմ վանքը Բեկլար Մելիքի կողմից նորոգվելուց հետո: Եվ միաբանության առաջնորդությունն անցավ կաթողիկոսների ձեռքը:

Առաջին վանահայրերից հիշվում են՝

Վարդանը՝ ԺԳ դարի կեսին.

Հովհաննեսը՝ Իվանեի որդին, 1271 և 1311.

Եղիան՝ 1443—1467.

Ներսեսը՝ 1469—14.5.

ԺԵ դարի սկզբում Գանձասարի վանքում հիշատակվում է Մատթեոս վարդապետ Ոխտեցին՝ Գրիգոր Տաթևացու աշակերտը: Իսկ Աղվանքի վերջին կաթողիկոսներից և վանքի առաջնորդներից շատերը Ջալալի սերնդից են: Դրանք են՝

Սարգիսը՝ 1556-ին.

Գրիգորը, որը հետո ուրացող դարձավ:

Դավիթ Արջանորեցին, որին խեղդեցին խաչենցիները՝ կախելով եկեղեցու զանգակատնից:

Փիլիպոսը.

---

[73] Հմմտ. Կաղանկտ., էջ 56—57:

Հովհաննես Ը-Ն,

Գրիգոր Դ-Ն՝ 1634.

Պետրոսը՝ 1653.

Սիմեոնը՝ 1675.

Երեմիան՝ 1676.

Եսային՝ 1702, որը գրի առավ ժամանակի դեպքերը:

Ներսես Ե-Ն՝ 1706 թ., որը Եսայու հակառակորդն էր:

Իսրայելը և Հովհաննեսը՝ 1763.

Սիմեոն Է-Ն՝ 1794.

Սարգիս Բ-Ն՝ աթոռի հակառակորդը, 1794, որի ժամանակ, 1815 թ., վերացվեց Աղվանքի կաթողիկոսության անունը և տվեց մետրոպոլիտի աստիճան: 1838 թ. նրան հաջորդեց Բաղդասար Հասան-Ջալալյանը, որը արքեպիսկոպոսական աթոռը տեղափոխեց Շուշի:

Այժմ Գանձասարում, բացի վերոհիշյալներից, կան նաև վանականների անշուք սենյակներ և իշխանների ու վերջին ժամանակների մի քանի կաթողիկոսների գերեզմաններ:

144. Գանձասարի արձանագրությունները[74]:

145. Այսքան մեծ և բարգավաճ կաթողիկոսական աթոռի և արքայաշուք իշխանության վիճակը (գավառը) պետք է, որ լավ բնակված լիներ և շատ բնակավայրեր ունենար: Արձանագրություններում հիշվում են 30-ի չափ բնակավայրեր՝ գյուղեր, ագարակներ, որոնց մեջ գլխավորներն ու հնագույնները ԺԳ դարում հիշատակվածներն են՝ **Մառ, Մակեղ, Հարկանդուս, Նորշինական, Արծաթենիս, Ծռանց, Վարդանաթաղ**: Վերջինս,

---

[74] Նկատի ունենալով, որ այդ արձանագրությունները ավելի կատարյալ կերպով հրատարակել է Բ. Ուլուբաբյանը (Երևան, 1981, էջ 76—166) և համեմատելով Ալիշանի ձեռագրի հետ՝ դրանք մենք զանց ենք առնում (ծան. «Բազմավեպի» խմբագրության):

ըստ երևույթին, այդպես է անվանվել Վարդանի կողմից: Վարդանաքաղում են գտնվում **Ուղտանոսի կտուրը, Տնկի երկիրը, Բոլոր քողը և Սեղընկնի** այգին, որոնք ագարակներ են համարվում: Իսկ ԺԴ—ԺԶ դարերում հիշվում են **Կակաչանց, Փղուռանց** և **Ծաղկավանց** բաժինները, **Ալմանատափն, Բեմի հողը, Կունի հողը, Մսերսի** կամ **Մսեշի հողը, Տանձաչորը, Կարան, Մինակտանը** (°), **Առատունքը, Կուռալանը, Ալմանան, Աղախը, Բազմատուքը,** որտեղ գտնվում են **Ծովերի հողը, Ծակ-խաչը,** ուր մինչև օրս գոյություն ունի մի խաչվեմ հետևյալ արձանագրությամբ. «ՈՀԸ (1229) թվին ես՝ Սմբատս, կանգնեցրի այս խաչը հանուն իմ հայր Վասակի. ովքեր կերկըրպագեն, թող աղոթքներում հիշեն հանուն Տիրոջ, իմ ցավակից եղբայրներ»: Իսկ մյուսներից ոչ մեկը չի հիշատակված գործերում, քարտեզներում կամ գրքերում: Թվում է, որ Աղախը **Ատախտ** տեղն է, ուր Խաչենի իշխան Գրիգորը Ժ դարի վերջին հավաքեց իշխաններին ու եպիսկոպոսներին, և Անանիա կաթողիկոսը դատեց Աղվանքի կաթողիկոսների հակառակորդներ Գագիկին ու Հունանին՝ երկուսին էլ կարգազրկելով:

146. Գանձասարի հակառակ կողմում, դեպի հյուսիս-արևմուտք, բարձրանում է համանուն լեռը, որտեղից սկիզբ է առնում Խաչեն գետի ջրերի ակունքների մի մասը: Այդ անունը ստուգաբանում են այսպես՝ Գանձա-սար՝ արծաթի գանձաշահ հանքերի շնորհիվ, որոնք երբևէ արդյունահանվում էին այնտեղից: Բայց այդ տեսակետից էլ քննություն չի կատարված, բացառությամբ արծաթահանքերի տեղի, որը բնակիչները ցույց են տվել Սարգիս Ջալալյանին[75]: Ըստ երևույթին հանքի կողմերում էր գտնվում **Արծաթենիս** գյուղը, որը հիշատակված է մեծն Ջալալ-դոլի արձանագրություններում և վանքի պարգևա-

---

[75] Հմմտ. **Ջալալյանց,** անդ, հ. Ա էջ 181—182:

գրերում: Սպասելի է, որ այնտեղ կարող են լինել և այլ մետաղահանքեր, որովհետև Գանձասարը հիշվում է Ժ դարից, հետևաբար շատ վաղուց հանքը հայտնի էր: Եվ այն Խոչքարի գավառի հանքերի հետ միասին Արցախի և Աղվանքի հարստության աղբյուրն էր կազմում:

Լեռան ամրության պատճառով ապահովված է ներքևում գտնվող վանքի պաշտպանությունը թշնամիների հարձակումներից: Այսպես, օրինակ, 1722 թ., երբ լեկերը ասպատակեցին Խաչենը, բանասեր Եսայի կաթողիկոսը, նահանջելով լեռան գագաթը, անվտանգ վայրից տեսնում էր ողբալի կողոպուտը, ինչպես որ ինքն ասում է. «Եկան, հասան Խաչենի երկիրը անվախ ու համարձակ կերպով... և ինչ որ կամեցան, այն կատարեցին, որ ի վիճակի չեմ նկարագրելու: Քանզի մեկ օրում անցնելով Կարկառ գետից մինչև Տրտու գետն ու Չարաբերդ երկիրը՝ ամբողջովին ասպատակ սփռեցին լեռներում, դաշտերում: Նախ՝ հրի մատնեցին գյուղերի փայտաշեն տներն ու բնակարանները, և ապա՝ հարձակվեցին գերիների վրա, իջեցրին լեռների գագաթներից, հանեցին լեռների ծերպերից և ներքևի ծառախիտ ու մացառոտ անտառներից: Եվ հավաքելով նրանց ունեցվածքը՝ նրանց միացրին նաև ոչխարների, արջառների ու ամեն տեսակի չորքոտանի անասունների հոտերն ու նախիրները և իրար խառնած գետի ափով քշեցին ներքև: Գերիներին և անասուններին իրար էին խառնել այնպես, ինչպես հորդ հեղեղ: Եվ նրանք գնում էին ինչպես մի մեծ բանակ, որը մենք մեր աչքերով տեսանք, քանի որ փախել և հասել էինք լեռան կատարը, որը Գանձասարի սուրբ աթոռի վերևում է: Թշնամիները մեզ չհասան: Եվ լանջերից դիտելով մենք տեսնում էինք կատարվող դեպքերը: Սա եղավ ՌՃՀԱ (1722) թվի ապրիլ ամսի Ի (20)-ին, Զատկի երկրորդ կիրակի օրը: Այնտեղից տեսանելի էին նաև ետ մնացողների ողբը, կոտորվողների սու-

գը, գերիների վայնասունը, մայրերի կսկիծը, գերված զավակների լաց ու կոծը, որբացածների ողբալը, ունեցվածքի կողոպուտը։ Լացողների ձայնին իրենց վայնասունն էին խառնում նաև մեջքակոտոր տղամարդիկ։ Եվ բնակություն հաստատելով կարծր քարաժայռերում ու լեռներում՝ նրանք միասին սուգ էին անում։ Իսկ թշնամու զորքը, տանելով ավարն ու գերիներին, խառնում է իր բանակին, չվում Տկնակերտ և տեղավորվում Տրդու գետի (որին այժմ պարսկերեն լեզվով Թարթառ ենք կոչում) մի կամրջի վրա, որին Ղարի-քոփրի են ասում։ Բայց այնտեղ չմնացին և չկարողացան Չարաբերդի ու Պարտայի երկրին այնքան վնաս պատճառել, ինչքան մեզ, քանի որ նրանք, նախապես իմանալով, ամրացել էին իրենց լեռների ամրոցներում։ Մանավանդ, որ երիտասարդներից ոմանք էլ դիմադրում էին թշնամուն, որոնցից շատերին կոտորեցին։ Դրա համար նրանք ավարն ու գերիներին շտապ կերպով անցկացրին Կուր մեծ գետից դեպի իրենց կողմը»[70]։

## ՄՅՈՒՍ ՀԱԲԱՆԴ—ԱՄԱՐԱՍ, ԱՍԿԵՐԱՆ

147. Սյունիքի գավառներից մեկին անվանակից լինելը ցույց է տալիս, որ արևմտյան կողմից սահմանակից է Արցախի գավառ **Մյուս Հաբանդը**։ Պատմիչների վկայությամբ այն գտնըվում է Սիսականորի հարավում, իսկ այժմ՝ Մեծիրանքում և հյուսիսից սահմանակից է այժմյան Ծուշիին։ Սա շատ հազվադեպ հիշատակվում է գրքերում և միշտ՝ Ս. Գրիգորիսի վարքի

[70] **Հասան Ջալալյանց Եսայի կթղ., Պատմութիւն համառօտ Աղուանից երկրի, Երուսաղէմ, 1868, էջ 37—39։**

և մասունքների պատմության մեջ, իսկ հետագա դարերի պատմիչների կողմից կոչվում է **Փոքր Սյունիք**, մասնավորապես այնպես, ինչպես նրան սահմանակից Սիսական-Ոստանը։ Միջնադարում և դրանից հետո իր հոչակավոր ավանի անունով կոչվեց **Ամարաս գավառ**։ Իսկ Թ դարի Աղվանքի պատմիչը այդ երկուսը զատում է միմյանցից և համարում առանձին գավառներ, դասելով նրանց շարքում, որոնք դարի կեսին ապստամբեցին բաղանիկեցիները, որը նրանցից առաջ ավերել էր պարսիկ բռնակալ Բաբանը[77], իսկ մի փոքր ավելի առաջ, 821 թ.՝ պարտավցի պարսիկները։ Դրանից կարելի է գուշակել, որ այդ գավառը Գարգար գետի երկարությամբ ձգվում էր արևմուտքից դեպի արևելք, թերևս մինչև այժմյան երեք գավառների՝ Ջրբերդի, Վարանդիհի և Քեպերլիհի սահմանակցման տեղը։ Բայց երկրամասի բուն տեղը | գետակի հովիտն է, որը ձախից միանում է Գարգարին, սակայն անունը չի նշվում, որովհետև մեր նախնիների կողմից Ամարաս չենի տեղը նշվում է մի այլ գետակի վրա։ Հովտի հյուսիսային ծայրում, որը սրանց խառնարանի ձախ կողմում է, գտնվում է այժմյան նշանավոր **Ասկերան** գյուղը, որի անունով էլ հարմար գտանք անվանել վիճակը (գավառը)։

148. Այդ գավառի արևելյան ծայրից մի քիչ հեռու, որը բուն Հաբանդից դուրս է, երեք գավառների՝ Ջրբերդի, Վարանդիհի ու Քեպերլիհի սահմանակցության տեղում, արքունական ճանապարհի վրա, գտնվում է **Շահ-պուլաղ** գյուղը։ Այն մոտ է Խաչեն գետին, որտեղ Նադիր Շահը ամրոց է կառուցել, իսկ ռուսները այն նորոգել են և կազակների համար զորանոց դարձրել։ Նա պատրաստել է նաև գեղեցիկ պատշգամբ և պարտեզներ՝ արտաքին եռակամար բակով։ Աղբյուրը բխում է ե-

---

[77] Հմմտ. **Եղնկտ.**, էջ 327։

ռանկյունաձև անջատ լեռից, արևմուտքում գտնվող գյուղի թիկունքից, որն ավելի արևելք է ընկած, քան Արցախի մյուս բոլոր լեռները: Այն հնում սեփականացրել էր Ուտիքը: Այնտեղից մինչև այստեղ ընկած է Աղվանքի ընդարձակ դաշտը: Լեռան հյուսիսարևելյան և հարավային կողմերը կարծես կռանով հատած լինեն: Այնտեղ կան կրային սպիտակ ու փայլուն զանգվածներ՝ քարացած որդերի հետ միասին: Նրա թիկունքում կա մի այլ լեռնաբլուր, որի ստորոտում ընկած է Բարուխ գյուղը՝ ևս հնագույն ու կրային զանգվածով ու միջում գեղեցիկ փոքրիկ լեռնահովտով:

Լեռների կողքերը գարնանը ծածկվում են բարգավաճ բուսականությամբ և ծաղիկներով: Դրանցից է հայկական երեսնակը (agrimonia)՝ ըստ Դուռնֆորի[78]: Այն տարածված է վայրի սալորենիների (մամուխ), թզենիների և ռնենիների մեջ: Լեռան գագաթի անկյունում, մոտ 1000 մ բարձրության վրա, որտեղից երևում են մեծ դաշտը, Խաչենի ու Գարգարի հովիտները, Արցախի լեռները, գտնվում է վիմատաշ, կիսավեր մի փոքրիկ եկեղեցի՝ եռակողմ թևերով, արևմտյան կողմից՝ քառակուսի, իսկ ներքևից՝ խաչաձև: Ըստ Տյուպոսի հետազոտության[79]՝ եկեղեցին ներսից ու դրսից քարով է շարված, իսկ հայկական տառերի նշանները ու ձևերը դասավորված են թվականարների նման:

Տաճարի մոտ կանգնեցված է մի մեծ խաչվեմ՝ հետևյալ արձանագրությամբ. «Ես՝ Աշոտի որդի Ճահնշահս, իմ հոգու համար խաչ կանգնեցրի. ովքեր կկարդան, թող աղոթքների մեջ

---

[78] Ակիշանն օգտագործել է՝ Tournefort Pitton de, Relation d' un voyage du Levant, հ. 3, Լիոն, 1717:

[79] Ալիշանը հանձնականի է հիշում և օգտագործում. Dubois Frederic, Voyage autour du Caucase. հհ. 1—6, Փարիզ, 1839—1843:

հիշեն՝ ԶԺԲ (1263) թվին»: Այդ տեղերի քննությունը կատարել է ճանապարհորդ Հելվետիացին, 1834 թ. ապրիլի 24-ին. գիշերը վրա է հասնում, և թեպետ «գրեթե շառագույն լուսինը իր լրության ժամանակ բարձրանում էր մշուշապատ հորիզոնով, բայց ի վիճակի չէր լուսավորելու թփերով պատած, ջրով լցված փոսերի բավիղները, որոնք սահմանափակում են դաշտի ընդարձակությունը: Եվ նրանում մերձավոր գյուղերի նշան չկա՝ ո՛չ աշտարակներ, ո՛չ կղմինդրածածկ կտուրներ և ո՛չ էլ սպիտակ ավաղած պատեր, և բազում տեղերից լսվում էր թաթարների մեծ շների հաչոցը», մինչև որ բախտի բերմամբ նա կարողացավ հասնել թաթարների մի շեն և գտնել իր ճանապարհը:

149. Եկեղեցու մնացորդից կարելի է գուշակել, որ այդ տեղում նշանավոր մի շեն է եղել: Եվ նույն Աշոտը, որ հիշվում է Ծակխաչի արձանագրության մեջ, թերևս արքայական ցեղից լինի: Մեր գուշակությունը հաստատում են նաև Աղվանքի պատմագիրները, քանզի Տեր Բաղդասարը այս գյուղը և նրա մոտ գտնվող **Պեշիքլին** կոչում է **Տիգրանակերտ**: Տեր Եսային աղվանից լեկերի պատմության մեջ գրում է, որ նրանք եկել են Վարանդի երկրից և տեղավորվել Տկռանակերտում ու այնտեղից չվել Թարթառի ափերը[80]: Դրանից հազար տարի առաջ Աղվանից պատմության մեջ հիշվում է **Տգռնակերտ** հնչմամբ: Վանքի երեցը եղել է Տեր Պետրոսը, որը մասնակցել է Եղիա կաթողիկոսի ժողովին[81]: Մեկ դար առաջ էլ նա հիշվում է Հերակլ կայսեր պատմության մեջ: Մարաստանից գալով Աղվանք՝ նա կամենում էր անցնել Վրաստան: Խորքով արքայի հրամանով՝ նրա զորավարները այդ կողմերում կտրեցին կայսեր ճանապարհը: Ծահ-Վարազը Այրարատի հյուսիսային կողմից

80 Եսայի կթղ., անդ, եջ 38—39:
81 Հին. Կղնկտ., էջ 300:

«անցնում է Գարդման, նրա դեմ և բանկվում **Մյուս-Տիգրանա-կերտում,** նրա դիմաց։ Ծանենը (հարավից) երեսուն հազարով հասնելով՝ բանակ է դնում Հերակլի թիկունքում, **Տիգրանակերտ ավանում։** Սրանք տեղավորվել էին այստեղ, իսկ նրանք՝ այնտեղ, Հերակլի բանակն էլ ընկած էր երկուսի միջև։ Հերակլը, երբ տեսավ, որ իրեն մեջ առան, հանկարծակի հարձակվեց իր թիկունքում գտնվող զորքի վրա, կոտորեց նրանց, գնաց Ծղղուկք, իսկ ձմռանը լեռնակողմով անցավ Նախիջևանի դաշտը»[82]։ Ըստ Սեբեոս պատմիչի՝ երկու Տիգրանակերտներ կային, որոնցից մեկը, ինչպես ինձ թվում է, այս Տգռանակերտի տեղում էր, մյուսը՝ նրա վերջում, որը թերևս աշխարհացույցում նշված **Թոռնոգյուղ** գյուղն էր։ Վերջինս առաջինից հեռու էր մեկ փարսախ։ Եվ Հերակլի բանակը գտնվում էր այդ երկուսի միջև։ Հերակլը պարսիկների դեմ այդ արշավանքում առաջնորդեց հերոսաբար նահատակվող քաջամարտիկների պայքարը, 624 թ.։ Եվ պատմիչը մանրամասնորեն կատարում է այդ տեղերի քննությունը և դա ոչ թե սոսկ ազգային, այլ համաշխարհային պատմության համար։

150. Ծաղկուլագից հարավ-արևմուտք, Գարգարի ձախ ափին են գտնվում **Աղտամը, Քախըչ պաղը** (՞), իսկ աջում՝ **Մորուզուուն, Ղըզըլ-ճապելը, Նախիջևանը, Քեթյուքը** (գուցե՝ **Գետիկ),** որը հյուսիս-արևմուտքից կից է Ամարաս գետակին և Գարգարին։ Այդ կցման անկյունում է գտնվում **Հոճալը** կամ ռուսերեն՝ **Խոճալինսքայան,** որը նրանց հանգրվանն ու զորակայանն էր։ Նրա հյուսիսում, գետակի աջ ափին, խառնարանին մոտիկ, գտնվում են **Ասկերան** ավանն ու ամրոցը՝ կառուցված Շուշիի **Փանա** խանի կողմից։ Նրա մոտ կա նաև մեկ այլ ամրոցի ավերակ։ Դրանց միջոցով Խանը պահում էր կիրճի

———————

[82] **Սեբեոս Եպիսկոպոս, Պատմութիւն, Պետերբուրգ, 1879, էջ 92—93։**

ճանապարհը, որը Ծուշիից տանում է Ուտիի աշխարհը։

Այստեղից դեպի արևմուտք է ընկած Ամարասի բուն հովիտը՝ կավճախառն կրային կազմությամբ։ Գարգարի ափերին կան առանձին բլուրներ, որոնք, ինչպես ասում է Տյուպոսը, կարծես դուրս են ցցվել երկրի ծոցից։ Գարգարի ընդարձակ հովտի արևելյան կողմին է միանում Աղվանքի դաշտավայրը։ Եվ դաշտերի ու հովիտների բոլոր կողմերում, ըստ հիշյալ ճանապարհորդի, կան հայոց նախնիների բնակավայրերի հետքեր և մեծամեծ գյուղերի մնացորդներ, գերեզմանների խոյաձև տապանաքարերով, հիշատակություններով, որոնք վկայում են այդ վայրերի երբեմնի բարվոք վիճակի մասին։

Ասկերանի արևմտյան կողմում գտնվում է **Տաշ-պուլաղ** գյուղը, որը թարգմանվում է Քարաղբյուր։ Դա ցույց է տալիս, որ այդտեղ, ինչպես նաև Ծաղպուլաղում, աղբյուր է բխել վիմախառն լեռներից, որոնք գետակի հովտի ձախ պարիսպն են կազմում։ Սրա մուտքի մոտ **Ղարաքեշիշ** գյուղն է, իսկ սրանից հարավ, գետակի մոտ՝ **Պատրիծիկը** (*)։ Գետակի աջ ափին, անկյան կողմում, Խոճալինսքից մոտավորապես մեկ փարսախ դեպի արևմուտք, գտնվում է **Մեխդուքենդ** գյուղը, որը կոչվում է Փանա խանի թոռան անունով։ Այդ գյուղից հարավ գտնվում է **Պալուճան**։ Սրանց միջև ընկած են լեռնաբլուրներ, որոնց ստորոտում, Մեխդուհին մոտիկ, նշվում է **Ս. Հովհաննես** վանքը։

151. Գյուղի և վանքի տեղերում նշվում են ինձ համար անվանի **Ամարաս** ավանն ու վանքը, քանի որ աշխարհագրագետներից ու ճանապարհորդներից ոչ մեկը չի նշում այդ տեղերը, ոչ էլ Սարգիս Ջալալյանը[83]։ Վերջինս միայն ասում է, որ այդ վայրերին մոտ են գտնվել **Մարասն** ու **Ամարասը**։ Սա գյուղ է կոչ-

---

[83] **Ջալալյանց Սարգիս.**, անդ., հ. Ա., էջ 196։

վում մեր հին պատմիչներ Բուզանդի[84] և Խորենացու[85] կողմից, իսկ Մովսես Կաղանկատվացին[86] անվանում է գյուղաքաղաք: Նրանք վկայում են, որ այն պետք է գտնված լինի Փոքր Սյունիքում կամ Արցախի Հաբանդ գավառում: Առանց երկբայելու պետք է ասել, որ դա գավառի գլխավոր շեներից մեկն էր, կարծեմ Դիցավանը, քանի որ անունը գրվում է նաև **Ասարագ**, որ հիշեցնում է Արամազդին և հաստատում այն կարծիքը, որ այդտեղ է գնացել մեր Սուրբ Լուսավորիչը՝ կռապաշտության խավարը հալածելու համար, կործանելով, ինչպես այլուր, այդպես էլ այդտեղի մեհյանները: Մեր պատմիչները թեև այդ բանը չեն հիշատակում, բայց ասում են, որ Ս. Լուսավորիչը, քարոզելով Աղվանքում, այնտեղ «եկեղեցու հիմք է գցում և շինարարության բանվորներ կարգելով՝ ինքը վերադառնում է Հայաստան»[87]: Եվ հետո գալով նրա թոռ սուրբ Գրիգորիսը՝ ավարտում է եկեղեցին և օրհնում, որը կրկին մայր եկեղեցի է դառնում Աղվանքի լուսավորության համար Գիսի եկեղեցուց հետո: Եվ Մազքթաց աշխարհի մանուկ հայրապետի նահատակությունից հետո «աշակերտները նրան վերցրին, բերին Ամարաս գյուղաքաղաքը և թաղեցին եկեղեցուն մոտիկ, բեմի հյուսիսային կողմում. այնտեղ դրին նաև Զաքարիայի արյունը ապակյա մի շշի մեջ, ինչպես նաև Պանդալյոնի նշխարքները: Եվ երկուսի շիրմն էլ դրեցին Գրիգորիսի սուրբ նշխարքների հետ, իսկ իրենք փախան և գնացին Հայաստան...: Այդ տեղը նշան չարեցին, որպեսզի ուրիշները նշխարքները չգողանային, կամ էլ՝

[84] **Փ. Բուզանդ**, էջ 26:

[85] **Մ. Խորենացի**, էջ 260:

[86] **Կղնկտ.**, էջ 39:

[87] Նույն, էջ 35:

[88] Նույն, էջ 39:

ավազակների երկյուղից շտապելուց: Եվ շատ տարիներ անցնելու պատճառով այդ տեղը անհայտ էր դարձել մոտավորապես 150 տարի: Դրանից հետո Վաչագան արքան, երբ սկսեց փնտրել երանելիների նշխարքները, եկավ **Ամարասի վանքը**, որը վաղուց էր կառուցված, և առաջներում այնտեղ եպիսկոպոսներ էին նստում: Իսկ այդ ժամանակ միայն վաներեց էր նստում, որն արքային ասում է, թե «Եկեղեցու մոտ շատ գերեզմաններ կան, քանի որ ավազակների ժամանակներից և եկեղեցու մեծագույն հիմնարկումից հետո ոչ ոք չկարողացավ շինել»[89]: Եվ թագավորը ամբողջ երկրին հրաման տվեց ապավինել աղոթքներին, փորել եկեղեցու հողը, եկեղեցի բերել Սուրբ Գրիգոր Լուսավորչի ու Հռիփսիմյանց կույսերի նշխարքների մի մասը և դնել այնտեղ, նոր հայտնաբերված սուրբ Զաքարիայի և Պանդալյոնի հանգստարանում: Եվ տեսիլքով հայտնի դարձավ սրբի սուրբ մարմնի հանգչելու տեղը, այն է՝ եկեղեցու արևելյան կողմում, և «հրամայեց փորել այդ տեղը: Նրա մոտ կար մի փոքրիկ բլրիկ, վրան՝ խաչ: Երանելին բարձրանալով բլուրը՝ կանգնել էր խաչի մոտ»[90]: Երբ տեսիլքը հայտնեցին արքային, արքունիքի և եպիսկոպոսների մեծ բազմությամբ նա գալիս է Ամարաս, և որովհետև «անձրևներից մեծ հոսանքներ էին առաջացել, քանի որ գարուն էր, ճանապարհը շատերի կողմից տրորվելու պատճառով դժվարանցելի էր դարձել շտապողների համար: Ուրեմն, այնտեղ ի՞նչ պետք է աներ քրիստոնյասեր արքան. նա եկեղեցու սպասավորներին թույլ չի տալիս իջնել երիվարներից և հանդարտ շրջելով եպիսկոպոսների բանակի մեջ, հրամայում էր ըստ կարգի գնալ, և իրեն թվում էր, թե ծաղիկների կամ փափուկ բանի վրայով է քայլում և ոչ թե կավի կամ տիղմի վրայով: Արքան սպասավորում էր մեծ սրբի

[89] Անդ, էջ 65:

[90] Անդ , էջ 71:

դեսպակին (պատգարակին), և այդպիսով զանազան լեզուների բազմությունից, տեսակ-տեսակ ձայներից և պեսպես պայծառակերպություններից, ինչպես լուսավոր ամպ, ծածկվում էր երկիրը: Բացի այդ, պատգարակը, շքեղացած աստղազարդ փառքով, գնում էր քրիստոնյաների բանակի միջով: Եվ երբ մոտեցան գյուղին, տեսան, որ մի փոքրիկ գետ է անցնում գյուղի միջով, և գետի վրա պատրաստված է մի կամուրջ: Քրիստոսի և նրա սրբերի համար անհագ սիրաբորբոք փափագով վառված արքան արքայական հագուստով անձամբ իջնելով՝ անցնում է գետով՝ ոչ ոքի թույլ չտալով սպասավորելու իրեն: Եվ հասնելով նշանակված տեղը՝ երկարատև ծնրադրություն է կատարում բոլորի առաջ: Այնտեղ խփելով արքայական վրանը՝ հրամայում է զգույշ լինել մինչև առավոտ: Այդ ժամանակ Ամարասում եպիսկոպոս չկար, և արքան գյուղի քահանային և ծերերին հարցնում է, թե նրանք այդ տեղում ինչ-որ նշան տեսել են, թե ոչ: Եվ նրանք պատմում են այն, ինչ որ լսել էին Հոր ճգնավորից: ... Բազում անգամ գալով՝ նա կատարում էր սուրբ Գրիգորիսի հիշատակը և շատերի առաջ երիցս կրկնում էր. «Աղվանից աշխարհում հավատացյալ թագավոր է հառնելու և փնտրելու է սուրբ Գրիգորիսի նշխարքների տեղը: Դարձյալ երբ մեզ հյուր եկավ մի ճգնավոր, ընդունեցինք նրան այնպես, ինչպես ընդունված է եղբայրների համար: Եվ նա, բարձրանալով այդ տեղը, քնեց: Քնից արթնանալով՝ նա տեղնուտեղը վերցնում է խաչը և դնում այդ տեղը ու պատվիրում, որպեսզի ոչ ոք չվերցնի խաչը, այլ ավելի մեծ խաչ կանգնեցնի և առավոտից մինչև իրիկուն անխափան աղոթք անի խնկարկությամբ, որովհետև այդ տեղում մեծ հրաշագործություններ եմ տեսնում»[91]:

---

[91] Անդ, էջ 73—76:

Սրանք և սրանց նման բաները իմանալով՝ արքան դարձյալ աղոթում է ու քարոզում: Ինքը՝ «առաքինասեր թագավորը, թևերը քշտելով բահն առնում է ձեռքը և եռանդուն կերպով փորում, իսկ բարեսեր թագուհին, թագավորական հագուստով պեղում էր հողի մեջ: Նրանց հետ նաև եպիսկոպոսները, քահանաները, նախարարները և նախարարների կանայք մեծ հոժարությամբ հագուստներով կրում էին փորած հողը: Եվ այն ժամանակ շատ խորը փորելով՝ շեղվում են դեպի հյուսիսային կողմը, և նշխարքները մնում են արևելյան կողմում: Արքան և ամբողջ ժողովուրդը մեծ տրտմության մեջ են ընկնում, մինչև որ զղջացած թագավորը նստում և հոգս է անում ամբողջ ժողովրդի հետ միասին: Արքան, այնուհետև քաջալերելով ընշմարիտ հավատով, ասում է, որ անխափ պետք է լինի ամենակալ Աստծու խոսքը, և նրա անունով անմիջապես պետք է գտնվի փնտրվածը. ես հաստատ գիտեմ, որ նա մեզ ամոթով չի թողնի: Այն ժամանակ արքան հրամայեց, որպեսզի հետո բերված սրբերին դնեն փորածի առաջ և սկսեն փորել արևելյան կողմը. փորողները հանդիպեցին ցանկալի գանձին: Արքան և նրա հետ եղողները համակվում են հավերժական հրճվանքով, և բազմությանը հայտնի է դառնում նշխարքների գյուտը: Եվ ամբոխը մոտենալով կուրքին՝ հարվածում է վրանին ու վարագույրին, մինչև որ դուրս է գալիս թագավորը և հազիվ կարողանում է հանդարտեցնել ամբոխին: Իսկ գերեզմանը և երևելի նշխարքները բացելիս անսովոր մի անուշ հոտ էր բուրում, որից բոլորը մի քանի ժամ թմրության մեջ են ընկնում՝ չզգալով խընկարկության հոտը: Դրա վրա սաստիկ հիացան արքան և ներկա եղողները, և բոլորը միահամուռ փառք էին տալիս այդպիսի վսեմ բարիք տվողին:

«Սրբի գերեզմանի մոտ, հողի վրա, նստել էր թագավորը և հրամայում էր արքունական զանազան սպասավորություններ

կատարել և կողովը դնելով իր ծնկների վրա՝ մեծ երկյուղով սպասավորում էր սրբերին: Քահանաները հանում էին նշխարքները և լցնում կողովի մեջ, որը թագավորը պահել էր իր գրկում: Նշխարքների մոտ գտան ապակյա երկու շիշ, որոնցից մեկը լցված էր Զաքարիայի արյամբ, իսկ մյուսը՝ Պանդալյոնի նշխարքներով: Եվ երբ բոլորը դուրս են հանում, ամբողջ բազմությունը ողջունում է առավոտից մինչև երեկո: Արքան, կընքելով արքունական մատանով, հրամայում է մեծ զգուշությամբ պահել մինչև առավոտ: Նույն Գրիգորիսի գերեզմանոցում գտնում են և մեկ այլ ապակյա շիշ՝ լցված խմիչքով: Այն վերցնելով՝ արքան է՛լ առավել գոհ է մնում Աստծուց՝ իրենց այդ ամենահաճոյող բարիքը տալու համար: Հաջորդ օրը արքան հրաման է տալիս ամբողջ երկրում դրոշակ պարզել, բերել սուրբ սեղանի ոսկեղեն ափսեն և քաղցր գինով նշխարքները լվանալ ու շարել՝ ըստ պայծառության: Արքան հրամայում է ամեն մի եպիսկոպոսի տալ ինչ-որ մաս՝ իրենց վիճակներում բաշխելու համար: Իսկ նշխարքների մեծ մասը հրամայում է թողնել Ամարասում, իսկ մնացածը, կնքելով թագավորական կնիքով, ինքն էր պահում՝ մեծ զգուշությամբ ու զանազան սպասավորներով սպասավորելով: Արքան հրամայում է գերեզմանի վրա մատուռի հիմք գցել և շինարարությունը շտապ ավարտել, իսկ մատուռն էլ անվանակոչել Սուրբ Գրիգորիս...: Հետո ամբողջ բանակը մեկնում է սուրբ պաշտոնյաների հետ՝ առաջին կարգադրության համաձայն»[92]: Եվ մեծ հանդիսավորությամբ բարձելով նշխարքների մեծ մասը՝ թագավորը բերում է Ուտիք, իր սեփական Դուտական գյուղը, որտեղ շինում է մատուռ՝ սուրբ Պանդալյոնի անունով և տեղավորում նշխարքները, իսկ մի մասն էլ տեղավորում է այլ դաստակերտում, որը

[92] Անդ, էջ 80—83:

կառուցել էր իր Խնչիկ կոչված աղջկա համար, մի մասն էլ միշտ մտն էր ածում իր հետ բանակում՝ տարվա մեջ երկու անգամ, երեքական ժամ կատարելով սրբերի տոնը: Նրա հիշատակը մինչև օրս կատարում է Հայաստանյայց առաքելական եկեղեցին՝ այն անվանելով Աղվանից կաթողիկոս Գրիգորիսի նշխարքների գյուտի տոն, որը կատարվում է մեհեկան ամսի 28-ին, այն է՝ մարտի 6-ին: Այս դեպքը մանրամասնորեն ներկայացնում է Աղվանից պատմիչը՝ ճշգրտելով այն ժամանակակից տվյալներով. դա ընդօրինակել են նաև հին ժառանգորդները: Տփխիսից և Շուշիից ապրիլի 23-ին գրում են, որ Ամարասում են գտնվում Սուրբ Գրիգորիսի նշխարքները: Թեմի արքեպիսկոպոս Գևորգը վարդապետ Գևորգ Արամյանին ուղարկում է նորոգելու եկեղեցին, որի բեմի առջև պեղելով՝ գտնում են օրոտցած կափարիչով փիմափոր գերեզման՝ Սուրբ Գրիգորիսի մարմինը, վրան գրված հայ և ասորի գրերով: Բայց երբ բացում են, տեսնում են, որ այնտեղ միայն հող կա: Հետո փոսի հյուսիսային կողմի պատը պեղելով, գտնում են նրան նման մի այլ շիրիմ և նրանում նշխարքները: Շուշիից 2000 մարդկանց հետ միասին գալիս է արքեպիսկոպոսը, վերցնում է գլուխը և դնում գերեզմանի վրա, արծաթյա ափսեի մեջ, որպես հարգանքի նշան: Այնուհետև տանում են Շուշի և երեքական օր դնում են քաղաքի բոլոր եկեղեցիներում, որպես հարգանքի նշան, իսկ հավատացյալները պատվի համար խումբ-խումբ հանախում են եկեղեցի: Արքեպիսկոպոսը դադարեցնում է եկեղեցու շինարարությունը, մինչև Էջմիածնի ժողովից պատվեր ստանալը: Թվում է, որ առաջին գերեզմանը դիտավորյալ կերպով դատարկ է թողնվել՝ գերեզման թալանողներին խաբելու համար. ինչպես

որ ասում են, թե Լենկթեմուրը բացել է և ոչինչ չի տեսել[93]:

152. Նշխարքների գյուտից հետո եպիսկոպոսները կրկին հաստատվել են Ամարասում, որոնցից հիշատակվում են՝

Գառնիկ.

Հռոմակ՝ Զ դարի կեսից հետո.

Մխիթար՝ Զ դարի վերջին.

Սերոբ.

Հովհան՝ Է դարի կեսին.

Սահակ՝ Ը դարի սկզբում.

Հովսեփ՝ ապա կաթողիկոս, 746—762 թթ.

Սարգիս և Վրթանես՝ ԺԳ (դարի) կեսին.

Ներսես՝ 1282;

Բարսեղ՝ 1730:

Սերովբեի ժամանակը ստույգ հայտնի չէ, նրա մասին միայն ասվում է, թե նշխարքները Հռոմեական կայսրությունից բերել է Ամարաս, որոնց հետ նաև Լուսավորչի աջը: Ամարասը հնում եղել է ոչ միայն Աղվանքի եպիսկոպոսանիստ վայրը, այլև կաթողիկոսական աթոռի նստավայրը, բայց թե երբ, չգիտենք: ԺԳ դարի վերջին Բաթու խանը ուղարկեց Տարսայիճի որդի Ջալալին «այլ մոնղոլ տղամարդկանց հետ Աղվանից մեծ աթոռ Ամարաս, որը նրանց կաթողիկոսների հին աթոռն էր, և այնտեղ տանել տվեց սուրբ Գրիգորիսի գավազանը..., քանի որ նրա գերեզմանը այնտեղ էր գտնվում, ուրեմն գավազանն էլ մնալու էր նույն եկեղեցում: Նրա հետ տարան նաև սքանչելի աստվածահրաշ խաչը, որը հին ժամանակներից այնտեղ էր՝ ամբողջապես պատրաստված ոսկուց և զարդարված լզ (36) թանկարժեք քարերով: Սա մատնվեց նույն թեմի մի լիրբ ու

[93] Այս վերջին մանրամասնությունների աղբյուրը Ալիշանը նշում է իր ձեռագիր օրինակում՝ «Մասիս, լրագիր, 5 հունիսի, 1856, թիվ 332»:

նգգամ քահանայի կողմից: Եվ քանի որ այնտեղ էր գտնվում Հունաց կայսեր դուստր Դեսպինան, որին կնության էր վերցրել Աբաղա խանը, և նա սնել էր իր որդեգիր Բատին, նա մեծ թախանձանքով խնդրեց խաչն ու գավազանը և ուղարկեց թագավորական Կոստանդնուպոլիս քաղաքը: Այս ձևով կողոպտվեց Աղվանից աշխարհը՝ զրկվելով պատվական ու ատտվածային գանձից»[94]:

Այժմ Ամարաս հին եկեղեցին կանգուն է երկրի խորքում, գմբեթաձև կաթողիկեով, որը հետագա դդ. նորոգեց ու սենյակազարդ պարսպով պատեց Մելիք Շահնազարը՝ ըստ Սարգիս Ջալալյանի[95]: Բայց թե այնտեղ կա՞ն արձանագրություններ կամ այլ հնություններ, նա և ուրիշները չեն հիշում. դրա հետ միաժամանակ անծանոթ են մնում նաև սահմանները:

153. Այս վիճակի մեջ նախապես գրածի համաձայն կան նաև այլ տեղեր՝ հին եկեղեցիներով, որոնք հիշատակվում են այս կողմերի արձանագրությունները հավաքողների կողմից, սակայն առանց ստույգ կերպով ցույց տալու տեղերը: Դրանցից են Հավաքտիկը, որտեղ եկեղեցի է կառուցվել 1233 թ., ինչպես ցույց է տալիս արձանագրությունը. «ՈՁԲ թվին, Վախտանգի և նրա կին Մամքանի որդի Հասանի իշխանության ժամանակ, ես՝ Հովհաննես քահանաս, Տեր Գրիգորիսի քրոջորդին և Գեորգիի եղբորորդին և այլ միաբաններ շինեցինք այս սուրբ եկեղեցին՝ մեր հոգիների փրկության համար»: Կա նաև մի այլ տապանագիր արձանագրություն. «Ես՝ Աղաբեկի որդի Ջաջութս, իմ հոր՝ Սմբատի տապանի վրա խաչ կանգնեցրի. ՌՀԳ». դրանում հայրանվան վրիպակ կա:

---

[94] Ստ. Օրբելյան, անդ, հ. Բ, էջ 218:
[95] Համեմ. Ջալալյանց Սարգիս, անդ, հ. Ա, էջ 196:

**Բատալա-ձոր.** այնտեղ կա 1181 թ. կառուցված հնագույն եկեղեցի. «ՈԼ թվին, Սմբատի իշխանության ժամանակ, ես՝ Բարսեղ երեցս, Սարգիսը և մեր եղբայրները ժողովրդի հետ միասին շինեցինք այս եկեղեցին, ջուր բերեցինք. ովքեր կերկրպագեն, թող մեզ հիշեն իրենց աղոթքներում»: Ջուր բերելը ցույց է տալիս, որ եկեղեցու մոտ վանք է եղել: Իսկ մի այլ արձանագրությունից պարզ է դառնում, որ այն եղել է Գանձասարին մոտիկ, որովհետև դրանում ասված է. «Ես՝ Վասակի դուստր, Վախտանգի որդի Ջաքարեի ամուսին Խորիշահն, դարձա սուրբ միաբանության անդամ, գնեցի մատաղ ու գիրք և տվեցի սուրբ Գանձասարին, միաբանները Աստվածածնի փոխման տոնին երկուժամյա պատարագ կատարեցին. ով խափանի, թող դատվի Աստծու կողմից»:

**Թողան.** ավերակ գյուղ է Խաչենի գավիթափ ձորում: Այնտեղ կա կիսակործան քարաշեն մի եկեղեցի և ոչ հին, 1647 թ. արձանագրություն. «Աստծու կամքով ես՝ Տեր Եղիաս, շինեցի այս սուրբ եկեղեցին՝ Առտի բեգի որդի, իմ կողակից Բեղարինի հոգու հիշատակի համար, Շահբազի ժամանակ, Մութուղօղլի խան Թաղուլդի իշխանության օրոք և Գանձասարի կաթողիկոս Տեր Գրիգորիսի կաթողիկոսության ժամանակ, ՌՂՋ թվին»:

**Պուկեսի բերդ.** բարձր վայրում կառուցված, գմբեթարդ եկեղեցով ուխտատեղի է, նորոգված ոմն Հովհաննես վարդապետի կողմից, որը թողել է իր անունը՝ դրոշմված բեմի վրա: Նրա կողքին է գտնվում ոմն սուրբ Գեորգիի տապանը, և այան վրա գրված է. «Ղուկաս վարդապետը Հայոց ՌՄԼ (1781) թվին շինեց մի ջրաղաց և տվեց սրան որպես հիշատակ»:

## ՊԱՐԶԿԱՆՔ ԳԱՎԱՌԸ—ՇՈՒՇԻԻ ՎԻՃԱԿԸ

154. Արցախի վերջին, փոքրիշատե ծանոթ գավառը **Պարծկանքը** կամ **Պարզկանքն** է, այն է՝ **Պանծկանքը**, որը գրչագրական այլ ձևով հայտնի է **Պազկանք**, **Պածկանք** և այլ անուններով: Շատ պատմիչներ նշում են, որ այն պետք է ընկած լինի Ամարասից հարավ: Բաղանիկեցիների՝ դեպի Հաբանդ, Անի Ամարասից հարավ: Բաղանիկեցիների՝ դեպի Հաբանդ, Ամարաս, Պարզկանք, Մախանք արշավանքների մասին ստուգապատում հին պատմիչ Կաղանկատվացին Սուրբ Գրիգորիսի պատում հին պատմիչ Կաղանկատվացին Սուրբ Գրիգորիսի պատմության մեջ մեջբերում է Հովք ճգնավորի մասին ծերերից ավանդածը Վաչագան արքային: Այնավորի մասին ծերերից ավանդածը Վաչագան արքային: Այն ավանդության մեջ Քրիստեղ գավառի աշակերտության սկիզբն է դրվում հանուն Քրիստեղ գավառի աշակերտության սկիզբն է դրվում հանուն Քրիստոսի, որտեղ պատմվում է. «Ոմն ճգնավոր այր Հովքը, հույժ տոսի, որտեղ պատմվում է. «Ոմն ճգնավոր այր Հովքը, հույժ առաքինի վարքով ապրելով աշխարհում, որն ուներ նաև առաքինի վարքով ապրելով աշխարհում, որն ուներ նաև առաքելական շնորհ, իր բազմաչան աշխատանքով, Քրիստոսի առաքելական շնորհ, իր բազմաչան աշխատանքով, Քրիստոսի անկատմամբ հավատով և սիրով Արցախ աշխարհի մի մեծ մանկատմամբ հավատով և սիրով Արցախ աշխարհի մի մեծ մասը՝ Պարզկանք կոչվածը, ետ է դարձնում մոլորության ճանապարհից՝ դիվանվեր անոտի պաշտամունքից փոխարկելով Քրիստոսի ծանոթ աստվածությանը...: Շատ անգամ գալով՝ սա կատարում է սուրբ Գրիգորիսի հիշատակը»[96]: Հայտնի է, որ Պարզկանքը սահմանակից էր Ամարասին, իսկ Հովքի վարդապետության ժամանակը թվում է ավելի առաջ, քան Սուրբ Մեսրոպի գալուստը:

Պատմիչները այս գավառում ոչ մի շեն կամ վայր չեն նշում, որի հետևանքով բացի Ամարասի հետ սահմանակցությունից, հնարավոր չէ այն քննել հանգամանորեն: Թվում է, որ սա ընկած էր Գարգարի ձորահովտում, սկսած նրա ակունքից վերջացրած Գարգարացիների դաշտաբերանով, որտեղ և մենք

---

96 **Եղնկտ.**, էջ 75:

ենք հատում վիճակիս աշխարհագրության սահմանը: Հարավային կողմից իր մեջ առնելով արևելյան վտակների բոլոր հովիտները՝ հասնում է մինչև գետերի ջրբաժանը, որոնք հարավից հոսում են դեպի Երասխ: Եվ ըստ այդմ նրա մեջ է մտնում նաև այժմյան մեծ Վարանդին գավառի հյուսիսային ծայրը, որը մենք համարում ենք Շուշիի բուն վիճակը (գավառը)՝ մեծ քաղաքի անունով, որը ընկած է Չըրբերդի, Վարանդինի և Ջանգեզուրի սահմանամիջում, և այն ամբողջ Առանի, այսինքն՝ Ղարաբաղի գլուխն է:

155. Մեծ և ամուր **Շուշա** կամ **Շուշի** քաղաքը գտնվում է Գարգարի գետի ձախ կողմում, առանձնացած սարահարթում, կավախառն ու պատռված անառիկ ու անմատույց ժայռոտ տեղում, բացի քաղաքի երևանյան և գանձակյան կողմերից, որոնք էլ ամրացված են աշտարակներով: Բարձրավանդակի շրջագիծը մոտավորապես երկու մղոն է, որի փոքր մասում բերդաքաղաքն է, իսկ մեծագույն մասում՝ գերեզմաններն ու պարտեզները:

Անցյալ դարի երկրորդ կեսին ինչ-որ գյուղ էլ է հիշատակվում Շուշիի տեղում, որի կոնկրետ տեղը չի նշվում: Չեմ կարող կարծել, թե այն Վարդանի[97] կողմից հիշատակված **Շուշուպը** լինի, Խաչենի կողմերում եղածը, որին տիրեց Փանլուն: Նադիր Շահի կողմից հալածված թաթարները, երբ Խորասանից վերադառնում են այստեղ, ունենում են Ճեվանշիր տոհմից Փանախան անունով մի թուրքմեն առաջնորդ: Սա տիրեց Ղարաբաղին, նվաճելով երկրի հինգ մելիքներին և իր աթոռը հաստատեց նաև Պայաղ, ապա Շահպուլաղ վայրերում, այնուհետև 1789 թ. այդ տեղը գրավեց իր աներ Շահնազար Մե-

---

[97] Վարդան Վարդապետ, անդ, էջ 100:

լիքից և կառուցեց ամուր բերդը՝ պարսիկներից պաշտպանվելու համար: Բերդը կոչվեց **Փանապատ**, որտեղ դրամ կտրեց իր անունով, որը մինչև օրս գործում է: Երբ այստեղ տեղափոխեց Շուշի գյուղի բնակիչներին, բնակավայրն ստացավ նրանց գյուղի անունը (Շուշի): 1790 թ. Փանային հաջորդեց նրա որդի Իբրահիմը, որի օրոք պարսից Աղա Մահմուդ Շահը 1794 և 1795 թթ. երեք անգամ պաշարեց քաղաքը, երրորդ պաշարման ժամանակ քաղաքը սովի մատնելով՝ գրավեց այն և դաժանորեն վարվեց բնակիչների հետ: Այդ պատճառով ինքը չարաչար սպանվեց, և քաղաքը նորից անցավ Իբրահիմին: Նա 1805 թ. ռուսների պաշտպանությամբ մտավ քաղաք և նահանջելիս զրկվեց կյանքից: Նրան հաջորդեց իր որդին՝ Մեխդի Խուլին: Նա ևս կամեցավ քաղաքը հանձնել պարսիկներին: Ռուսները 1822 թ. ամբողջությամբ գրավեցին Շուշին ու Ղարաբաղը՝ զորապետ Մադաթով Հայկազնի հրամանատարությամբ և դարձրին տանկական երեք կուսակալությունների՝ Ղարաբաղի, Շեքի և Շամախի մայրաքաղաքը:

Քաղաքաբերդը ի բնե ամուր էր, որն էլ ավելի ամրացել էր խոր կիրճով: Կիրճը նրա ներքևի կողմում է, իսկ հարավային կողմում քարակտուր բլուրն է՝ երկու բարձր աշտարակաձև բարձունքներով: Քաղաքի ներքին կերպարանքը զորշ ու տգեղ է. նրանում չկան գեղեցիկ շենքեր, փողոցները նեղ են ու ցեխոտ՝ կավոտ ու կրոտ հողերի ու դարուփոս տեղերի պատճառով: Տները հողով են շաղախված, մասամբ քարաշեն են, մի շուկա ունի՝ քարով ու աղյուսով շինված: Քաղաքը ջրակարոտ է, որովհետև ջուրը փողրակով բերված է Երևանի կողմը:

Քաղաքում հայկական երկու եկեղեցի կա՝ Ագուլեցոց և Ղազանչեցոց կոչվածները, կան նաև երկու փոքր, անշուք եկեղեցի, հայկական մի շուկա՝ փոքր կրպակներով: Քաղաքն ունի նաև տպարան, որտեղ լույս են տեսել մատյաններ (գրքեր) արք-

եպիսկոպոս և մետրոպոլիտ, բանասեր Տեր Բաղդասարի ջանքերով: Նա իր աթոռը հաստատեց այստեղ՝ դառնալով Աղվանքի կաթողիկոսների հաջորդը: Նրա թեմերն են՝ Ղարաբաղն ու Շրվանը: Շուշիի վարժարանում* գործում է Պաղիլեի ավետարանական ընկերությունը: 1864 թ. քաղաքի հայազգի տիկնանց ջանքերով բացվեց աղջիկների վարժարանը, որն անվանվեց **Ղարաբաղի Սուրբ Մարիամի Օրիորդաց ուսումնարան:** Շուշիում են նստում նաև ռուսաց զորավարը և Ղարաբաղ գավառի քաղաքական պաշտոնյաները:

Քաղաքի բնակիչները հայեր են և թաթարներ, մոտավորապես 7000 հոգի՝ բոլորն էլ ճարտար ու զվարթ մարդիկ: Քաղաքի կլիման այնքան էլ առողջարար չէ՝ ամառվա տոթի և ձմեռվա ձյան ու ցրտի պատճառով, որովհետև այն Կասպից ծովի մակարդակից բարձր է մոտավորապես 4000 մ: Բայց իր բարձրության ու շրջակայքում եղած անտառների շնորհիվ Կովկասի լեռների, արցախյան ու Սյունյաց գավառների համար ստեղծում է գեղեցիկ ու հաճելի տեսարան:

Քաղաքի շրջակայքը գեղեցիկ դիրք ունի, անտառապատ է, տարածքը՝ ապառաժոտ, գույնզգույն քարերով ու դեղնասպիտակ կրահողով ծածկված: Գարգարի աջից, քաղաքից մոտ մեկ ժամվա հեռավորության վրա **Շուշաքենդ** գյուղն է, որը հին Շուշի գյուղն է, ուր, գետի ափին, կան ջրաղացներ:

156. Շուշիի բոլորակաձև հովիտը, ըստ Տյուպոսի երկրաբանական հետազոտության, նման է երկրամուղ զորության կողմից բարձրացված մի բաժակի՝ կրային կազմությամբ, ընդմիջարկված հրաբխային զանգվածներով, որոնց մեծամեծ կտորները ընկած են այս ու այն կողմն:

Այդ պինակում (գավառում) նշված գյուղերն են՝ Գարգարի

---

* Որպես աղբյուր Ալիշանը նշում է՝ «Մեղու, Իբ, 70»:

ձախ կողմից, քաղաքի հարավ-արևմուտքում՝ **Տաշ-պլղը**, որը ընկած է այն բարալեռան ներքևում, որի վրա քաղաքն է: Սրա արևմտյան կողմում **Զարիստրն** է, որը հիշատակված է Աղվանից թեմի Քարտիշ վանքի արձանագրությունում. «Զարիստրը յուր գետով», թեև այդտեղի գետը Գարգարն է: Սրա մուտքից ավելի հեռու և Հաքարի գետը (որը Զարիստրի հետ հիշատակվում է նույն արձանագրությունում)՝ ու Սյունյաց լեռան անջրպետի ստորոտում գտնվում է **Լիսոգորսկի** (*) գյուղավանը, որը համարվում է ռուսական պահապան զորքի զորանիստը: Այդ գյուղավանի մոտ է գտնվում Գարգարի ակունքը:

Իսկ Շուշիից հյուսիս-արևելք գտնվում են՝ **Խալիֆալը**, **Կոպլիքենդը**, **Քերքենանը**, **Խանքենդը**, **Պեկլյուլը**, **Խանիծակը**՝ Գարգարի մի վտակի միացման տեղում: Թվում է, որ սա նույն **Խանձիկ** գյուղն է, որտեղից էր Աղվանից կաթողիկոս Պետրոսը, ԺԷ դարի կեսին: Սրանից հյուսիս ընկած են **Պալըճան** և **Մեխդուքենդը**, որի մասին խոսք եղավ Ամարասի ժամանակ:

157. Գարգարի աջից, Շուշիից հարավ, գյուղեր չեն նշվում, այլ Շուշաքենդից ավելի հյուսիս-արևելք նշվում են **Տաղտանը**, **Տաշքենդը**, **Էղլիսը**, **Խանտաղը**՝ Գարգարի մոտ: Սրա վերջում՝ **Թիրավը**, հյուսիսից՝ **Ապտալը**, սրա հյուսիսային եզրի մոտ՝ **Առանծամյունը** (*), **Բիրճամալը**, որի վերջից դեպի հյուսիս, Գարգարի մոտ, Նախջավանն է:

Թիրավի վերջում ձգվում են լեռնաշղթաներ՝ Գարգարի վտակները անջրպետելով **Քանաշին** (*) գետից, որը իջնում է այդ լեռներից: Այդ գետը հոսում է դեպի արևելք, բայց ինձ անծանոթ են նրա ընթացքն ու գետաբերանը: Լեռների, գետի ու Գարգարի հովտի միջև նշվում են վերոգրյալ գյուղերը՝ **Թաքիրը**, **Էնջու-քենդը**, **Ղարաքենդը**, **Կյուլպաշը** և այլն:

158. Մինչև Վարանդին գավառին անցնելը նշանակենք վերջին ուսումնասիրողների կողմից հիշված գյուղերը, որոնք

Խաչենի կողմերում են գտնվում: Դրանք են՝ **Սեյկյուսլու** գյուղը, որտեղից էին կաթողիկոսներ Թումասն ու Առաքելը, ԺԷ դարի վերջին, **Դշլախը**, որտեղից էր Սարգիս կաթողիկոսը, ԺԶ դարի սկզբին*, **Պումը**, որտեղից էր Փիլիպոս կաթողիկոսը, ԺԶ դարի երկրորդ կեսին:

Դրանցից նշանավոր է **Ծմակերը**, որտեղ կա անվանի մենաստան, ուր եղել է Աղվանքի կաթողիկոսների աթոռը, ԺԷ դարում: Կաթողիկոսներից մի քանիսի գերեզմանները կան այնտեղ, ինչպես որ երևում է արձանագրություններից.

Ա. «Հանուն Աստծու ես՝ Կարապետ կաթողիկոսս, ՊԿ թվին շինեցի այս եկեղեցին՝ իմ հոգու հիշատակի համար. ձեր աղոթքներում հիշեցե՛ք»:

Բ. «ՋԻԴ թվին մահացավ Թովմա կաթողիկոսը»:

Գ. «ՋԿ թվին ես՝ Տեր Առաքյալ կաթողիկոսս, պարոն Հասան Բեկից վերստին գնեցի եկեղեցու դռան խոտհարքը (դուրուղ), գր (3000) թանկայի ծախս արի և տվեցի, մեր հոգու փրկության համար՝ նաև այս սուրբ Աստվածածինը: Ով հակառակվի և ջանա խլել կամ ծախել այս հանդը, Կայենի բաժինը կստանա: Արդ, ես՝ Տեր Առաքել կաթողիկոսս, կանգնեցրի խաչ և նորոգեցի եկեղեցու գլուխը Տեր Թովմա կաթողիկոսի հոգու համար. ով նստի աթոռին, թող Զատկին մեկ պատարագ անի. ՉԻԹ թ.»:

Դ. «Թիվ ՊԿ. Կարապետ կաթողիկոսի և
Երիցս վեհերի տապանն այս է,
Որոնք օծվել են Աղվանից տանը,

---

* Ալիշանն իր ձեռագրում մի հատված ջնջել է, այն է՝ «Արջաձոր կամ Առաջաձոր, որտեղից Դավիթ կաթողիկոսն էր, ԺԶ դարի կեսին, որտեղ 1458 թ. գրված մի ավետարան է հիշում Տեր Բաղդասար Հասան Ջալալյանը»:

Թափառել այստեղ, իսկ այն ժամանակվանից
Ամփոփված են այս տապանի ներսում
Եվ միշտ սպասում եմ ամեն ինչի ստեղծողին՝
Ականկալելով /պտղալից կյանքին»:

Վանքի մոտ ջրի ափին, **Ներքին-Ընծուն** ագարակում, խաչքարձան է տնկած, և վրան գրած. «Ես՝ Հարբեկս (կամ Հարբելըս), կանգնեցրի այս խաչը իմ քրոջորդի Դեղի համար. ձեր աղոթքներում հիշեցե՛ք Դեղին և Գրիգորին. ...Խթ.». թվականի առաջին տառը ջնջված է: Սա թերևս վերոգրյալ Ընջու գյուղն է, ըստ թուրքական հնչման: Դրան մոտիկ մենաստան կա:

Մեր նախնիների կողմից հիշատակված **Գողթագրակ** տեղը այս կողմերում պետք է լինի, որովհետև Վիրո կաթողիկոսը, հոների ասպատակությունից խույս տալով Պարսկաստանից, այստեղ է ընկել և այստեղից դուրս գալով ու մեծ արագությամբ ընթանալով՝ մի գիշերում կամ օրում հասել Չարաբերդ»:

## ՎԱՐԱՆԴԻՆ—ՏՈՒՋԱԽ (ԴԻԶԱԿ)

159. Արցախի ամբողջ հարավային կողմը այժմ կոչվում է **Վարանդին**, որը մի լայնածավալ գավառ է, ընկած Մեղրիի, Զանգեզուրի, Չըլբերդի, Քեպերլինի, Ղարաբաղի գավառների և Երասխ գետի պարսից սահմանի միջև: Նրա ափերը, ինչպես նաև Քեպերլինի արևելյան սահմանները դաշտավայրեր են, իսկ արևմտյան և հյուսիսային կողմերը՝ լեռնավայր, ինչպես որ Արցախի մյուս մասերը:

Այժմ քարտեզների վրա լեռներից նշվում են Ծուշիի հարավարևմտյան մասում գտնվող **Քիրեզ** լեռը, նրանից հարավ՝ **Խոշանը**, իսկ նրանից էլ հարավ՝ **Զիարեթը**: Կան նաև այլ եր-

կայնածից լեռներ, որոնցից են, անշուշտ, **Դիզափայտի** լեռները, որոնք հայտնի են շատ վաղուց: Դրանց մասին խոսում է Աղվանից հին պատմիչը. «Մեծ լեռը շրջագայելով իր մեջ է առնում երկրամասի շատ գավառներ»: Ծուշիի արևելքից ձգվում են վերոհիշյալ լեռները, որոնք Գարգարի և Ք...շին գետի անջրպետներն են, իսկ սրանցից հարավ ընկած են **Կուրիանը** և այլ լեռներ, որոնց և երկրի մանրամասներին առհասարակ մենք ծանոթ չենք: Դրանք ցարդ ուրիշներին էլ մեծ մասամբ անծանոթ են մնացել, ինչը հաստատվում է քարտեզների վրա եղած դատարկությամբ: Այնտեղ պարզ չի նշմարվում նաև գետերի ընթացքը, ինչպիսին է նոր հիշվածը և նրանից հարավ գտնվող **Գարասուն**: Իսկ այն գետերը, որոնք իջնում են դեպի Երասխ, մենք նշել ենք Արցախի գետերի սկզբում:

160. Այս նոր գավառի մեջ են մտնում հին գավառներ **Մուխանքը**, այն է՝ **Միխանց տոհմը, Հարժյանը, Պիանքը** և **Քոտակը**, որոնցից միայն առաջին է հիշվում պատմության մեջ և բաղաճիկեցիների արշավանքում[98], որպես Պարզկանքի հարավում և նույն Ուտի գավառի վերջում գտնվող, որովհետև նրանից հետո սապատակված գավառների մեջ վերջինը սա է համարվում: Մյուսների անունները ամենևին չեն նշվում, որի պատճառով դրանց դիրքը, սահմանները և պատմական դեպքերը հայտնի չեն:

Միջին և հետին դարերում ամբողջ երկիրը երկու գավառի տրոհված է թվում **Դիզա** կամ **Դիզակ** և **Վարանդա**, իսկ նախապես, ըստ Վարդան աշխարհագրի[99], հայտնի է եղել մի՝ **Դիզափայտ** անվամբ, որը այլազգիները **Տոգախ** էին կոչում նաև անցյալ դարում: ԺԸ դարի վերջին մի արձանագրությունում

---

[98] Հտմտ. Կղնկտ., էջ 327:

[99] **Վարդան Վարդապետ**, Աշխարհացույց, էջ 11:

(որը շուտով կընդօրինակենք) այդ կողմերը Դիզակի փոխարեն կոչվում են **Վարանդայի** և **Քոչիզոփի** երկիր: Այս տեղում անունով մի գյուղ է հիշվում ԺԶ դարից Առաքել պատմիչի կողմից[100]: Նա ասում է, որ Արցախից գաղթածների հետ դուրս են գալիս նաև **Քոչիզու** գյուղից մելիք Փաշիկը, Դիզակից՝ մելիք Սուջումը: ԺԶ դարի վերջին Դիզակից ամբողջությամբ Պարսկաստան են քոչում ևս չորս գյուղ: Երկրի մելիքները հիշվում են և դրանից հետո. այսպես՝ Նադիր Շահի ժամանակ հիշվում է մելիք Հեկեն Դիզակից, Նադիր Շահից հետո՝ ոմն Հասանը (թերևս Ջալալյան), որը Վարանդայի մելիքն էր, որին սպանեց իր եղբորորդի Շահնազարը և խլեց իշխանությունը, մինչև որ Փանա խանը տիրեց Ղարաբաղին, օգտվելով երկրի տեր հինգ մելիքների անմիաբանությունից: Նա այնուհետև շուտ եկավ Ռուսաստանից և խնամիացավ խանի հետ՝ նրան կնություն տալով իր դստերը և իր բաժնից նրան նվիրելով Շուշի քաղաքը:

Մի վիճակ էլ կա **Ավետարանոց** անունով, իր մելիքի հետ միասին, որը հիշում է կաթողիկոս Աբրահամ Կրետացին[101]: Ինձ թվում է, որ այն պետք է ընկած լինի գավառի հյուսիս-արևելքում: Նրանում կա նաև համանուն մի գյուղավան՝ հայկական 200 տնով*: Ըստ հոգևոր իշխանության տվյալների՝ Ամարասի աթոռի թեմում գավառը նշվում է 1730 թվից:

Գավառի այժմյան քաղաքական տրոհումը չգիտեմ, որի համար էլ շեները միանգամից կնշեմ, սկսած Գարգարի անջրպետի հյուսիսից մինչև Երասխ:

---

[100] **Առաքել Դավրիժեցի**, Պատմութիւն, Վաղարշապատ, 1896, էջ 610:

[101] **Աբրահամ կթղ. Կրետացի**, Պատմութիւն անցիցն իւրոց և Նատր-Շահին Պարսից, Վաղարշապատ, 1870, էջ 74:

* Այս փոքրիկ մանրամասնության աղբյուրը Ալիշանն նշել է՝ «Մեղու, ԻԲ, 70»:

161. Գարգարի և Ք... անշրպետի լեռներում աշխարհացույցը նշում է **Յաշանը** վանքը, որը չգիտեմ, թե որն է, գուցե Ճալե՞թը կամ մեկ ուրիշը: Շուշիից մոտավորապես 10 մղոն դեպի հարավ, ապա հյուսիս-արևելք **Սուրբ Լուսավորիչ** անունով մի այլ վանք կա, որը թերևս **Հրեշտա վանք** հորջորջվածն է, որի վանահայրը Տեր Հասան Ջալալյան Բաղդասարն է: Ըստ արձանգրի՝ այդ վանքը Ս. Գրիգորիսի համար է, որի նշխարքները Պետրոս կաթողիկոսը ամփոփում է այդտեղ եկեղեցու շինարարության մասնակից Ամարասի եպիսկոպոս Բարսեղի միջոցով: Նա այդ մասին ասում է. «Աստծու կամքով ես՝ Պետրոսս, կաթողիկոսն եմ Գանձասարի սուրբ աթոռի, որը նորոգեց Ամարասի սուրբ աթոռի արքեպիսկոպոս Բարսեղը: Ամարասը Վարանդի և Քոչիզու նահանգինն է, քանի որ սրա վիճակները (նահանգները) բաժանվել ու մաս-մաս էին եղել: Ամեն մեկը կտրել էր իր մասը, իսկ մենք պատրաստվեցինք նորոգել հայրենի վանքը և առաջնորդ կարգեցինք մեր սիրելի աշակերտ Տեր Բարսեղ արքեպիսկոպոսին: Մենք նրան հրաման տվեցինք Ամարասի հովարանում եկեղեցին շինել, որը և նա շինեցավարտեց, ըստ մեր հրամանի. ով (՞) սրանով Քրիստոսի այլակերպության տոնին. օրհնեցե՛ք այս սուրբ տաճարը՝ այն անվանելով սուրբ Գրիգորիս: Սուրբ Գրիգորիսի նշխարքները բերելով՝ ամփոփեցինք այստեղ, Վարանդայի և Քոչիզու երկրներում, որպեսզի սրանք լինեն մեր երկու աթոռները: Ով ցանկանա այս վիճակը բաժանել և մեկին նստեցնել այլ տեղում, լինի կաթողիկոս, եպիսկոպոս կամ մելիք, այնպիսին թող նզովվի ԳԾԺԸ հայրապետների կողմից, Քրիստոսին խաչ հանողների շարքը դասվի և Հուդայի բաժինն առնա: Ես արեցի այս կտակրն ու արձանագրությունը. թող հավիտյանս հավիտենից մնա: Ես՝ Գրիգոր վարդապետս, գրեցի ՌԾՀԹ թվին»:

162. Սրանց մոտիկ, Ղարաքենդի և Ընջուի արևմտյան

կողմում կան հետևյալ գյուղերը՝ **Էշանը, Ծինկաքը, Գանաքցան** (*), **Ղարատաղը, Չարթաքը, Գաշին, Մաշատը, Բարխուքենդը, Խոտը, Սինիխը**։ Վերջինս արևելյան կողմից մոտ է Ծուշինին, իսկ նրա հարավում **Ղարապոլագն** է, սրանից հարավ՝ **Մաշամատը**, նրա վերջում՝ **Սարգիսաշենը**, որը հայ անվամբ հետաքրքրության է արժանի։ Սրանցից արևելք, Քենտիյան գետի ձախ կողմում, որը Արցախից Երասխ իջնող բոլոր գետերից ամենաարևելյանն է, գտնվում են **Ջամախ-օղլուն** կամ **Աք-օղլուն** գյուղավանն ու բերդը, արքայական ճանապարհի վրա, որը Երասխից և Սյունիքից տանում է Գանձակ։ Սա թերևս Դիզակի գլխավոր տեղն է, որը Վարանդայի երկայնաձիգ լեռնապարը արևմուտքից անջրպետում է այս սահմանում, որի հյուսիսային սարորտում նշվում են **Սալման**, իսկ արևմտյան կողմում **Թագավարդ** գյուղերը։ Հարավում են գտնվում **Թախը, Թրախթիխը (Դրախտիկ**)։ Դրանց վերջում բարձրանում է **Տախդա-տյուզ-թեփե** լեռը, որի անունը հիշեցնում է մերձավորությունը Դիզափայտ լեռան հետ։ Մեր նախնիների և ժամանակակիցների կողմից վկայվում է, որ այն այս կողմերում պետք է լինի, բայց կոնկրետ տեղը չի նշվում։ Եթե այն հիշյալ լեռը չէ, թերևս արևմտյան կողմի **Քիրեչը** լինի, կամ հարավային կողմի **Ջիարեղը**, որը, ըստ Սարգիս Ջալալյանի, բարձր, գեղեցիկ ու **ծաղկազարդ** լեռ է։

163. Այս լեռանն են ապավինել Սանեսան Մազքթաց արքայի որդիներ Մովսեսը, Դանիելն ու Եղիան, այն արքայի, որը սպանել տվեց Սուրբ Գրիգորիսին, որոնք աշակերտեցին նրան։ Ինչպես ինձ թվում է՝ նրանք նշխարքների հետևից էին եկել, և նրանց հետ էլ 3870 մարդ։ Անապարելով հասնել Դիզափայտ լեռը՝ նրանք ապրում էին խոտակերությամբ։ Արյունարբու Սանեսանը, գալով նրանց հետևից, սրի քաշեց նրանց Նավասարդի

իԹ (29)-ին[102]։ Նրանց ընկած տեղը կառուցվեց մենակյացների **Կատարո վանքը։** Այստեղ եկան, հասան հոնաց զորավարի, Աստղաբլուրի հավատացյալ Թեոփիլոսի որդիները, Մովսեսը ու երանողիս երեսուն ընկերները «և իրենց զորքով բարձրացան մեծ լեռը, որ կոչվում է Դիզափայտ։ Բարբարոս արքան նրանց հետևից ուղարկեց մեծ զորք։ Երբ նրանք հասան, կոտորեցին բոլորին Քրիստոսի հավատքի համար և կուտակելով իրար վրա՝ բոլորին այրեցին, նաև այն մենակյացներին, որոնք այնտեղ էին գտնվում։ Եվ լեռան անունը կոչվեց Դիզափայտ, որն այդպես էլ կոչվում է մինչև օրս։ Սրբերի տոնը կատարվում է արեգի իբ (կամ իա)-ն և մարտի 30 (կամ 29)-ին»[103]։ Իսկ ըստ մեկ ուրիշ տոնագրողի՝ «Ժամանակ անց ինչ-որ ճգնավոր մենակյաց մարդիկ եկան, բնակվեցին այդտեղ և այդ տեղը իրենց համար վանք դարձրին։ Նրանք ևս ընկան տաճիկների սրից Քրիստոսի հավատքի համար»։ Թե երբ է կատարվել այդ նահատակությունը, հայտնի չէ։ Իսկ սրբերի նշխարքները հայտնի դարձան Վաչագանի օրոք, ըստ Աղվանքի պատմիչի։ Եվ Զ դարի կեսին «թշնամիները հրդեհեցին Դիզափայտ լեռան Կատարո վանքի վկայարանները»[104]։

164. Պատմիչը ցույց է տալիս, որ լեռան սահմաններում պետք է գտնվի «Միանց տոհմի **Կաղսեղու** առողջարանը»[105], ուր 552—53 թթ. հայտնվեցին ոմն ճգնավորի և բազում այլ սրբերի նշխարքները, որոնք կամ այնտեղ էին նահատակվել, կամ էլ այնտեղ էին բերվել ուրիշ տեղերից։ Եվ Աբաս կաթողիկոսի

---

[102] **Կղնկտ.**, էջ 119։

[103] Այս մեջբերումը Ալիշանը պետք է քաղած լինի մի ձեռագիր Հայսմավուրքից։

[104] **Կղնկտ.**, էջ 119։

[105] Անդ, էջ 121։

հրամանով **Մոմհարից** երեցի ու **Հովհաննեսի վանքի** վանահայր Տիրիթի գործակցությամբ Տրի քահանա Դանիելը և բազում այլ հավատացյալներ գնացին, փորեցին տեսիլքով երևացած տեղը, «և գտնվեց թաքնված գանձը...,' նշխարքները ամփոփեցին ինչ-որ պատվական տեղում՝ յուրաքանչյուրից մաս վերցնելով, իսկ մեծ մասը վերցրեց Դանիել քահանան և մեծահարգ ընծաներով շտապելով՝ անմիջապես հասավ Աբաս հայհարապետի մոտ... և դրեց շատ մաքուր արկղերի մեջ»[106]: Այս հիրապետի մոտ... Այս հիշատակների մասին գրեց դեպքերի ժամանակակից ու վկա Անդրիանեն, որից օգտվելով իր պատմությունն է հյուսել Կաղանկատվացին: Իսկ այն սրբերը, որոնց հայտնվեցին նշխարքները, հետևյալներն են՝ Ստեփանոսը, Նախավկան, Թեոդորոսը, Վարոսը, Մամասը, Մար Սարգիսը, Գևորգը, Կոզմասը, Դամիանոսը, Ս. Քառասունքի մի մասը, խաչված ոմն Պողոսիկն ու Բասիրան, ինչպես նաև կենարար խաչափայտի մի մասը:

165. Լեռնապարի և Չերեքեն գետի հարավում, գավառի լեռնառահմանի նշանավոր տեղում է գտնվում **Թող** գյուղաքաղաքը, ինչպես որ նշվում է աշխարհացույցում, որը Աբրահամ Գ. կաթողիկոսը **Տող** է կոչում[107], ուր մի քանի օր նա մնաց Աղվանքի Ներսես կաթողիկոսի հետ՝ Մուղանում Նադիր Շահի հետ հանդիպումից վերադառնալուց հետո, 1736 թ.:

Ավանի արևմտյան կողմում նշվում է համանուն մի այլ գյուղ, որը մի քարտեզում անվանված է **Թում**: Դրա հյուսիսարևմտյան կողմում պետք է ընկած լինի **Հատրու** գյուղը, որի միջով անցավ կաթողիկոսը Տողից վերադառնալիս: Այն այժմ հա-

---

[106] Անդ, էջ 121—122:

[107] **Աբրահամ Կրետացի**, էջ 78:

յարՁակ գլխավոր գյուղերից մեկն է, որում ընդհանուր առմամբ 500 տուն կա*:

Հարավում են գտնվում **Աթակուրը**, **Մուխրանեսը**, արևելքում՝ **Ղըզըլ- ղըշլան**, **Ղարադաղը**, **Չերակուսը**, **Միկուրին**, որոնցից հարավ-արևելք ձգվում է լեռների մյուս բազուկը՝ ճյուղեր արձակելով դեպի հարավ, որտեղից գետերն իջնում են դեպի Երասխ: Նրանց ձորահովիտներում նշվում են հետևյալ գյուղերը՝ **Թակասիրը** (՞), որի հարավային ծայրում նշվում է մի մենաստան **Վանք**՝ նշված քարտեզում , իսկ մի այլ քարտեզում **Սուրբ-Շիհին** (՞) մենաստանը. դա արդյո՞ք **Շուփհաղիշն** է (՞): Նրա հարավային ծայրում ընկած է **Գարկա-պազարը**, իսկ նրանից դեպի արևելք, Քենտիլանի մոտ՝ **Չուվարը**, **Ապտյուռահման-բեկլուն**: Վանքի հարավային կողմում գտնվում են **Սարաճըկը**, **Պալյանդը**, **Սյուլեյմանլը**, **Բիլաճակը**, վերջինիս հարավում՝ **Տաշ-քեսենը**, **Կորավլը**, արևմուտքում՝ **Զանգյուրը** (՞), **Մենքյուտերեն**, **Տաշպաշը**, **Ղարաքոլը**: Իսկ սրանցից էլ հարավ, Երասխի և Թուղի սահմանամիջում և նրանց ճանապարհի վրա ընկած է **Միպրայիլը**՝ ռուսների պահպանության տեղը և սրբազան ննջեցյալների քավարանը:

Ըստ աշխարհացույցների՝ այստեղ են վերջանում Արցախի լեռների ճյուղերը, որոնց ստորոտի արևմտյան կողմում, Սյունիքի մոտ, **Թումաս** գյուղն է: Այդտեղից մինչև Երասխ և ապա Սյունիք իջնող և Երասխը հատող լայնածավալ դաշտում բլուրներ են բարձրանում: Իսկ այս դաշտավայրում քիչ շեներ են նշվում, ինչպես՝ **Քովտերեն**, **Շախպեկլին**, **Ըյուկերը**, **Խարիտիը**՝ Քոզլու գետի ափին:

**166.** Թե մինչև ե՞րբ էին Երասխի ափերը հասնում Արցախի սահմանները, չգիտեմ: Բայց աներկբայորեն պետք է ասել,

---

* Այս մանրամասնության աղբյուրը Ալիշանը նշում է՝ «Մեղու, ԻԲ, 70»:

որ Առանն է նորոգել Աղվանից իշխանությունը՝ Վաղարշակի ժամանակ տիրելով այս վայրերին։ Իսկ հետո, ըստ երևույթին, Փայտակարան աշխարհի տերերն են իրենց ձեռքը դրել դրա վրա, այնուհետև Ատրպատականի կողմից է նվաճվել։ Դա թողնենք մի այլ տեղում քննելու և նշենք գյուղեր ու շեներ, որոնք գտնվում են Արցախի կողմերի ծայրերում ու Հայոց բնիկ աշխարհացույցներում, սկսած արևելյան կողմից, որոնցից շատերը ռուսական զորակայաններ են կամ ամրոցներ՝ Պարսկաստանի սահմանը պահպանելու համար, որն անջատում է գետը։

Քենտիլանի և Երասխի խառնարանի մոտ կան **Պեյսամլը, Կյուլդանլը, Բշըգլը**, Գուրուզայի մոտ՝ **Պեկմեննի** գյուղերն ու ամրոցները, Չերեքենի մոտ՝ **Պապի** գյուղն ու ամրոցը, Քոզլուի մոտ՝ **Միրզա-մեխդուլի** բերդը, մյուս գետակի արևմտյան կողմում՝ **Մարիլյան** բերդը։ Սրա մուտքից դեպի Սյունիք իրար հետևից ընկած են հետևյալ գյուղերը՝ **Ապտալը, Սրճալը, Ծահչինարը, Սաֆարը, Մենտանիխը, Էշեկ-մեյտանը, Խյուտաֆերիյնը, Ալիճախլը**՝ Հագար գետի և Սյունիքի լեռների անջրպետին մոտիկ։

Խյուտաֆերիյնի մոտ, Առանի և Ատրպատականի միջև կա անվանի մի կամուրջ՝ 12 հաստկառույց կամարներով, որոնցից երեքը քանդել է Ղարաբաղի Իբրահիմ խանը, որոնք հետո նորոգել են ռուսները։ Կամուրջի մոտ են գտնվում **Առաքելիս** հայոց գյուղն ու մաքրատունը։ Կամուրջի հզոր կառուցվածքը և նրա վրայով պատվական քարավանների անցնելը կամուրջին շնորհել են պարսից այդ անունը, որ նշանակում է Աստվածատեղծ։

ՂԵՎՈՆԴ ԱԼԻՇԱՆ

# ԱՐՑԱԽ

Հրատարակության է ներկայացրել
համալսարանի հայագիտական կենտրոնը

Հրատարակչության խմբագիր՝ Ջ. Հ. Թամրազյան
Գեղարվեստական խմբագիր՝ Ն. Ա. Թովմասյան
Տեխն. խմբագիր՝ Հ. Հ. Խաչատրյան
Վերստուգող սրբագրիչ՝ Մ. Գ. Յավրյան

